# ՀԱՄԱՌՕՏ

# ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹԻՒՆ

ԿԱՄ

## ՍԿԶԲՈՒՆՔ

ՀՈԳԵԲԱՆՈՒԹԵԱՆ, ՏՐԱՄԱԲԱՆՈՒԹԵԱՆ, ԲԱՐՈՅԱԿԱՆԻ
ԵՒ ԲՆԱԿԱՆ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆՈՒԹԵԱՆ.



ՅՕՐԻՆԵԱՑ

Ա. Մ. Վ. ԳԱՐԱԳԱՇԵԱՆ





Կ. ՊՕԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ՔԻՒՐՔՃԵԱՆ
— 1868 —

Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ

**ՏԵԱՌՆ ՏԵԱՌՆ ԳԷՈՐԳԱՅ**

ՍՐԲԱԶԱՆ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

ԵՒ

Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ ՍՐԲՈՑ ԵՐՈՒՍԱՂԵՄԻ

**ՏԵԱՌՆ ԵՍԱՅԵԱՅ**

ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

ԵՒ

Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ Կ. ՊՈԼՍՈՅ

**ՏԵԱՌՆ ՊՕՂՈՍԻ**

ՍՐԲԱԶԱՆ ԱՐՀԻԵՊԻՍԿՈՊՈՍԻ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Փիլիսոփայութիւն բառը յատուկ մտքով մը կը նշանակէ մարդկային հոգւոյն կամ մտքին գիտութիւնը, որ սա չորս մասը կը պարունակէ՝ Հոգեբանութիւն, Տրամաբանութիւն, Բարոյական եւ Աստուածգիտութիւն կամ Բնական աստուածաբանութիւն։ Ասոնց, մանաւանդ առաջին երկու մասին, դպրոցական ուսման ընթացքի հետամուտ եղողներուն համար կարեւորութիւնը յայտնի է։ Մտքին կարողութիւններն ու գործողութիւնները ճանչնալ եւ անոնց ինչպէս եւ ուր ըստ պատշաճի գործածուիլը գիտնալը՝ քիչ օգուտ չըներ ուսման եւ գիտութեան հետ զբաղող եւ միշտ իր միտքը մշակել ուզող մարդու մը, երբ տեսնէ թէ մարդկային միտքն ինչ ճամբով հասած է եւ կը հասնի ճշմարտութեան, եւ կամ թէ որ տեսակ գաղափարներ եւ իրողութիւններ ինչ մտաւոր գործողութիւններով փնտռել եւ ապացուցանել յարմար եւ ուղիղ է։ Համառօտ ըսելով սա գիտութեան սորվեցուցածներուն վրայ ըստ բաւականին եւ յըստակ գաղափար ունեցող մը՝ նոյնը չունեցողէ մը շատ տարբեր տեսութիւն մը պիտի ունենայ իր հոգւոյն, իր իմացական գործողութիւններուն եւ թէ ունեցած ու թէ ունենալու դատողութիւններուն, եւ սորված ու սորվելու գիտութիւններուն վրայ։

Թէ աս գիտութեան ճշմարտութիւններուն, ստուգութեան մասին, ինչ արժէք տալ արժան է՝ ասոր վրայ բաւական կը համարինք միայն ըսել թէ ընթերցողք կամ ուսանողք կարող պիտի ըլլան ինքնին դատել աս կէտն ան լուսով զոր աս գիտութիւնն անոնց պիտի տայ։

Մեր աս համառօտ դասագրքին հոգեբանական մասն աւելի ընդարձակ է. տրամաբանականը համառօտիւ անցած ենք, ուստի եւ նախադասութեանց, ձեռնարկութեան կամ պատճառաբանութեան այլ եւ այլ կերպերուն եւ տեսակներուն, մեթոտի եւ իմաստակութեանց վրայ որ հոս համառօտ են՝ աւելի ընդարձակ տեղեկութիւններ մեր Տրամաբանութեանը մէջ ընդարձակ աւանդուած են։

---

ՀԱՄԱՌՕՏ

# ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹԻՒՆ



## ՄՈՒՏՔ

1. **ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹԻՒՆԸ** *յանձուկ մտօք ի՞նչ է։*

*Մարդկային իմացականութեան գիտութիւնն է. իմացականութեան՝ որով կը խորհինք։*

2. *Խորհիլն ի՞նչ է։*

*Իրաց վրայ գաղափար եւ զգացում ունենալ։ Գաղափարը՝ ճանաչում մը, զգացումն ալ ազդուիլ մըն է։*

3. *Ի՞նչ միջոցներով կը խորհինք։*

*Հոգւոյն կամ մտքին կարողութիւններուն միջոցաւ։*

4. *Հոգւոյ կամ մտքի կարողութիւնն ի՞նչ է։*

*Հոգեւոր կամ իմացական վիճակի մը ընդունակ ըլլալու, կամ նոյնպիսի (հոգեւոր, իմացական) գործողութիւն մը ընելու յարմարութիւնն է։ Ուստի կայ կարողութիւն որ կրաւորական է, կայ որ ներգործական է։*

5. *Մտաւոր վիճակ կամ գործողութիւն ի՞նչ է.*

*Երբ ցուրտ հով մը երեսիս փչելէն մնելու անախորժ զգացումը կ'ունենամ, մտաւոր կամ իմացական վիճակի մը մէջ եղած կ'ըլլամ. երբ այն անա-*

*խորժ զգացման ուստի գալը կը փնտռեմ, կամ այն զգացումն անցնելէն ետքը այն վիճակս նորէն միտքս կը բերեմ, մտաւոր կամ իմացական գործողութիւն մը ըրած կ'ըլլամ։*

6. *Հոգւոյն կամ մտքին նախնական կարողութիւնները քանի՞ են։*

*Երեք. Զգայնութիւն, Իմացողութիւն եւ Գործունէութիւն։*

7. *Փիլիսոփայութիւնը յանձուկ միտս, կամ իրրեւ դպրոցաց մէջ սորվելու ուսում, քանի՞ մաս կը պարունակէ։*

*Չորս. Հոգեբանութիւն, Տրամաբանութիւն, Բարոյական եւ Աստուածգիտութիւն կամ Բնական աստուածաբանութիւն ըսուածը։*

8. *Հոգեբանութիւնն ու Տրամաբանութիւնը ինչ բաներու վրայ կը խօսին։*

*Ասոնք կը խօսին Ա. գաղափարաց, Բ. մտքին կարողութիւններուն, եւ Գ. այն կարողութիւնները գործածելու կերպին կամ մեթոտին վրայ։*



# ՄԱՍՆ Ա.

## ՀՈԳԵԲԱՆՈՒԹԻՒՆ ԵՒ ՏՐԱՄԱԲԱՆՈՒԹԻՒՆ

---

### Ա. ԳԱՂԱՓԱՐՆԵՐ ԵՒ ԱՆՈՆՑ ԳԼԽԱՒՈՐ ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐԸ ԿԱՄ ՏԵՍԱԿՆԵՐԸ

9. *Գաղափարն ի՞նչ է։*

*Գաղափար մը որ եւ իցէ առարկայի մը եւ ներքին կամ արտաքին իրողութեան մը պատկերը կամ ճանաչումն է զոր միտքը կամ հոգին կ՚ունենայ զգայութեանց միջոցաւ։*

10. *Առարկայ եւ արտաքին կամ ներքին իրողութիւն ի՞նչ են։*

*Առարկան՝ բնական իր մըն է, զոր օրինակ՝ վարդ մը, ծառ մը։ Արտաքին իրողութիւն մը մեր մտքէն դուրս պատահած դէպք մըն է, զոր օրինակ՝ առաւօտուն արեւին ծագելը. Ներքին իրողութիւնը՝ առարկայի կամ արտաքին իրողութեան մը հոգիէն զգացուիլը կամ ճանաչուիլն է. զոր օրինակ՝ արեւին ծագելը տեսնելս եւ իմանալս, կամ ուրիշ որ եւ իցէ հաճոյ կամ անհաճոյ զգացում մը։*

11. *Գաղափարները քանի՞ կարգ կամ տեսակ կը բաժնուին։*

*Գաղափարներն այլ եւ այլ տեսակ կը բաժնուին. 1. իրենց բնութեանը կողմանէ, 2. իրենց ծագմանը, 3. իրենց որպիսութեանը, եւ 4. գաղափարներու շարժառիթ եղող առարկաներու եւ իրողութեանց կողմանէ։*

12. Գաղափարներն իրենց բնութեանը կողմանէ քանի՞ տեսակ են։

Գաղափարներն իրենց բնութեանը կողմանէ նըկատուելով՝ չորս գլխաւոր տեսակ են. Ըմբռնում, Յղացում, Յիշատակ եւ Երեւակայութիւն։

Երբ գաղափար մը կ'ունենանք անմիջապէս մեր մտքին տեսութեանը տակ գտնուող իրական առարկայի կամ իրողութեան մը պատճառաւ, այն գաղափարն ըմբռնում է. գաղափար մը զոր մենք այլ եւ այլ մասնական ըմբռնումներէ, այսինքն՝ մեր ճանչցած իրերուն մասունքներէն, կը շինենք մեր մտքին մէջ՝ յղացում կը կոչուի. եթէ գաղափարն առաջուց ըմբռնուած եւ հիմա ներկայ չեղող առարկայի կամ իրողութեան մը գաղափար է, յիշատակ կ'ըսուի. վերջապէս՝ եթէ գաղափարին ներկայացուցած իրն իրական կամ անձնաւոր, այսինքն՝ գոյութիւն ունեցող բան մը չէ, երեւակայութիւն կամ ցնորք կը կոչուի։ Զոր օրինակ՝ արեւին գաղափարն ըմբռնում է. արդար, իմաստուն, քաջ, առողջ եւ գեղեցիկ մարդու մը գաղափարը զոր մտքիս մէջ կրնամ շինել՝ յղացում է. անցեալ տարուան Արուեստահանդէսին զոր Փարիզ տեսայ՝ գաղափարը յիշատակ կամ յիշողութիւն է. երեքգլխեան օձի մը գաղափարը զոր մտօք կը ստեղծեմ՝ երեւակայութիւն կամ ցնորք է։

13. Գաղափարներն իրենց ծագմանը կողմանէ քանի՞ տեսակ են։

Իրենց ծագմանը կողմանէ՝ գաղափարներն են. Զգալի, Վերացեալ, Եկամուտ կամ Ստացական եւ Կեղծ։

Զգալի են այն գաղափարները զորոնք մեր արտաքին զգայութիւններուն մէկովը կը ստանանք, ինչպէս՝ նիւթական իրաց գաղափարները․ Վերացականները կը ստանանք վերացումամբ, ինչպէս՝ յատկութեանց եւ յարաբերութեանց գաղափարները, զոր օրինակ՝ կարմրութեան, մեծութեան․ Ստացական են այն գաղափարները որոնք դուրսէն մեզի կու գան, ինչպէս ձգողութեան օրէնքին գաղափարը, ոչ թէ ինքնագիւտ են, ինչպէս միութեան եւ պատճառի գաղափարները (33)․ Կեղծ են անոնք զորս միտքը կը ստեղծէ, ինչպէս՝ ոսկի լեռ, թեւաւոր ձի։

14․ Գաղափարներն իրենց որպիսութեանը կողմանէ քանի՞ տեսակ են։

Իրենց որպիսութեանը կողմանէ գաղափարներն են․ Յստակ, Մութ, Ճշմարիտ, Սուտ, այլովքն հանդերձ։

Գաղափար մը յստակ է, երբ այն գաղափարն ունեցողը բաւական յստակութեամբ ան իր առարկային ստորոգելիները կը ճանչնայ, եւ որոն վրայ այլ եւ այլ մարդոց մէջ կարծեաց տարբերութիւն կամ վէճ չըլլար․ ինչպէս՝ վարդի, խնձորի գաղափարները։ Մութ է ան գաղափարը որուն ներկայացուցած իրին վրայ անստուգութիւն կամ անորոշութիւն մը ունինք․ ինչպէս Միջոցի գաղափարը։ Ճշմարիտ է գաղափար մը որ բուն իրին համաձայն է, ինչպէս՝ Սպիտակ ձիւն։ Սուտ է գաղափար մը որ բուն իրին համաձայն չէ, ինչպէս՝ Սեւ կաթին գաղափարը։

15․ Գրագիտական նկատմամբ ճշմարիտ գաղափարն ի՞նչ է։

Գրագիտական նկատմամբ գաղափար մը ճշմարիտ է, երբ բառ կամ բացատրութիւն մը բացատրուած

գաղափարին բուն բառն է, գաղափարն ալ ուղիղ բանին համաձայն է։ Զոր օրինակ՝ հայերէն աղէկ չգիտցող մը կրնայ ըսել ոտքով քալել, փոխանակ ըսելու գլխով քալել․ աս մարդուն գաղափարը գրագիտօրէն սխալ է կ'ըսենք, քանզի բառն ինքնին գաղափարը չի տար։ Լաֆոնդէն կ'ըսէ թէ Երինջը, Այծն ու Ոչխարն Առիւծի մը հետ ընկերութիւն ըրին, եւ Այծին ծուղակին մէջ Եղջերու մը բռնուեցաւ։ Աս գաղափարն ալ գրագիտօրէն ճշմարիտ չէ․ քանզի այնպիսի ընկերութիւն մը ենթադրել ուղիղ բանին հակառակ է․ այնպիսի տկար անասուններ այնչափ զօրաւորի մը հետ չեն կրնար ընկերութիւն ընել․ դարձեալ Երինջը, Այծն ու Ոչխարը խոտակեր ըլլալով որսի պէտք չունին։ Բայց երբ նոյն հեղինակը կաղնւոյն ամբարտաւանութեամբ խօսիլ կու տայ, Եղէգին ալ պարզութեամբ եւ խոնարհութեամբ, գաղափարը ճշմարիտ է, քանզի, եթէ անոնք խօսելու կարող ըլլային, այնպէս պիտի խօսէին։

16․ Բացարձակապէս եւ ըստ ինքեան ճշմարիտ գաղափարն ինչ է։

Երբեմն գաղափարները բացարձակապէս կամ ինքնին եւ միշտ ճշմարիտ են․ զոր օրինակ սա գաղափարը․ Երախտագիտութիւնն առաքինութիւն է։ Երբեմն ալ մէկ նկատմամբ ճշմարիտ են, ուրիշ նկատմամբ մը սուտ․ զոր օրինակ՝ Լաֆոնդէնին սա խօսքը․ Հզօրին փաստը միշտ լաւագոյն է։ Այս գաղափարն ըստ փորձառութեան ճշմարիտ է, իբր թէ ըսել կ'ուզէ․ Զօրութիւնը տկարութեան կը յաղթէ։ Բայց նոյն գաղափարն իբրեւ սկզբունք սուտ է․ քանզի փաստ կամ իրաւունք մը տկարին բերանը նոյնչափ իրա-

ւացի է որչափ զօրաւորին բերանը։ Նոյնպէս նոյն հեղինակին սա խօսքը. Անզգամին շնորհք ընողը միշտ կը զղջայ, փորձառութեան նայելով ճշմարիտ է, ըստ փիլիսոփայից ալ չափով մը ճշմարիտ է, բայց քրիստոնեայ ատենախօսի մը բերանը գրեթէ ամբարշտութիւն է, քանզի կրօնքը բարիքն անխըտիր ընել կը պատուիրէ։

17. Սխալ գաղափար ունենալէ կամ սխալ դատողութիւններ ընելէ ազատ ըլլալու ապահովագոյն միջոցն ի՞նչ է։

Գաղափարի մը կամ դատողութեան մը վրայ վըճիռ տալէ առաջ՝ պէտք է ուշի ուշով խորհիլ, եւ ջանալ քաջ ճանչնալ ան բանը որուն վրայ խօսիլ կ'ուզենք։ Անձնական տեսութիւններ կամ նախապաշարումներ կը մոլորեցունեն զմարդիկ, եւ շատ անգամ իրերն ըստ մասին միայն կամ պակասանկատելով կը կարծենք այնպէս դատել զանոնք, որպէս թէ անոնց վրայ կատարեալ եւ ուղիղ տեսութիւն ունինք։

18. Գաղափարի ճշդութիւնն ի՞նչ է։

Գաղափարի մը ճշդութիւնը անոր ճշմարտութենէն կախում ունի. քանզի ան որ ճշմարիտ է՝ միանգամայն ճիշդ է։ Բայց եւ այնպէս գաղափարի մը ճշմարտութեանն ու ճշդութեան մէջ տեղ տարբերութիւն կայ։ Ճշմարիտ է գաղափարը՝ երբ բուն իրին հետ համաձայն է. ճիշդ է՝ երբ իրը բոլոր պարագաներովը մէկտեղ կ'իմացնէ։

Աղէկ բացատրելու համար պէտք է իրաց վրայ ճիշդ տեղեկութիւն ունենալ, բառերուն զօրութիւնն ալ աղէկ գիտնալ։ Համբակներն ասոր շատ

փայլթ ըննելու են, քանզի առանք չատ անգամ իրենց երեւակայութեանը վստահելով կը գրեն առանց ըստ բաւականին եւ ճշդիւ ճանչնալու եւ կշռելու իրենց գաղափարները, եւ իրենց բացատրութիւնը գաղափարներուն հետ լաւ համեմատելու։

19. Գաղափարներն իրենց չարժառիթ եղող առարկաներու եւ իրողութեանց կողմանէ քանի տեսակ են։

Գաղափարներն իրենց չարժառիթ եղող առարկայից եւ իրողութեանց կողմանէ քանի մը տեսակ են, այսինքն՝ Բնական (ֆիզիքական), Բարոյական, Բնազանցական (Մէթաֆիզիքական), Անհատական, Ընդհանուր, եւայլն։

Բնական գաղափարները նիւթական իրաց գաղափարներն են, ինչպէս՝ ջրոյ, հողոյ. Բարոյականները՝ Բարոյական իրաց, ինչպէս՝ համեստութեան, հպարտութեան. Բնազանցականները՝ բոլորովին վերացեալ կամ մտաւոր իրաց, ինչպէս՝ ժամանակի, պատճառի. Անհատականները՝ անհատներու, ինչպէս՝ Կեսարու, Հռոմայ. Ընդհանուրները՝ մի եւ նոյն սեռի կամ տեսակի, ինչպէս՝ տնկոց, չնչաւորաց, մարդոց։

20. Գաղափարներու մէջ զանազանելու ինչ բան կայ։

Գաղափարներու մէջ զանազանելու երկու բան կայ. Տարածութիւն եւ Գումարութիւն։ Գաղափարի մը տարածութիւնը ըսելով գաղափարին ցուցուցած անհատներուն թիւը կ'իմացուի. գաղափարի մը գումարութիւնը ըսելով կ'իմացուի այն մասնաւոր գաղափարաց բովանդակութիւնը որ այս ինչ գլխաւոր գաղափարի մէջ պարունակուած են եւ անով կ'ի-

մացուին։ Զոր օրինակ՝ ընդհանուր (կենդանի) գաղափարին տարածութիւնը բոլոր չնչաւորաց տեսակներն են. իսկ նոյն գաղափարին գումարութիւնը՝ ընդհանուր գաղափարին մէջ պարունակուած ուրիշ շատ մը էական գաղափարներ են, զոր օրինակ՝ գործարանաւորութեան, կենաց, շարժման, սննդականութեան, ծննդականութեան եւ ուրիշներ, որոնք չնչաւոր բառով կը հասկնանք։

## Բ. ՄՏՔԻՆ ԿԱՐՈՂՈՒԹԻՒՆՆԵՐԸ

### 1. Զգայնութիւն.

21. Զգայնութիւնն ինչ է։

Հոգւոյն զգածուելու, այսինքն՝ ազդում մը ընդունելու կարողութիւնն է։

22. Հոգին քանի տեսակ բաներէ կրնայ զգածուիլ։

Երեք տեսակ, այսինքն՝ Բնական (ֆիզիքական), Բարոյական եւ Վերացեալ կամ իմացական բաներէ։ Ուստի եւ զգայնութիւնը երեք է. Բնական, Բարոյական եւ Իմացական զգայնութիւն։

23. Բնական զգայնութեան, այսինքն՝ նիւթական բաները զգալու մէջ զանազանելու ինչ բաներ կան։

Բնական զգայնութեան մէջ, արտաքին առարկաներէն մարմնոյն գործարաններուն կամ զգայարանաց վրայ եղած ազդումը՝ Տպաւորութիւն կ'ըսուի. այն տպաւորութեան պատճառաւ հոգւոյն մէջ յառաջ եկած փոփոխութիւնը, այսինքն՝ հոգւոյն ազդուիլը՝ Զգացողութիւն կը կոչուի։

24. Բնական զգայնութիւնը ինչ գործարաններով կ'արթննայ կամ կը շարժի։

Հինգ գործարաններով որոնք Զգայութիւնք կամ Զգայարանք կը կոչուին եւ են Շօշափելիք, Ճաշակելիք, Հոտոտելիք, Տեսանելիք եւ Լսելիք, որոնք Հոգւոյն հաճութեան կամ տհաճութեան, հեշտութեան կամ վշտաց հինգ աղբիւր են։

25. Այս զգայարանքներն ինչո՞ւ համար հոգւոյն հաճութեան, կամ տհաճութեան աղբիւր են։

Բնական զգայնութիւնը զգայարանաց միջոցաւ զարթուցանող առարկան կամ իրողութիւնը ինչ որ ըլլայ, հոգին միշտ այն երկու ընդհանուր կերպով կը զգածուի. այսինքն՝ հաճոյական կամ անհաճոյական կերպով, ուստի եւ կամ հեշտութիւն կ'ունենայ եւ կամ վիշտ։ Հոգւոյն հաճոյական կամ անհաճոյ կերպով զգածուելուն Զգացում կ'ըսուի։

Եթէ տպաւորութիւնը մարմնոյն գործարանը կը վնասէ, զգացողութիւնը վշտալի է, եւ հոգին ցաւով հանդերձ՝ նոյնը յառաջ բերող առարկային դէմ տհաճութեան կամ ատելութեան զգացում մը կ'ունենայ։ Եթէ ասոր հակառակը պատահի, այսինքն՝ եթէ տպաւորութիւնը գործարանները հեշտացնէ, զգացողութիւնը հաճոյական է, հոգին ալ, ուրախութեամբ հանդերձ, իրեն հաճութիւն պատճառող առարկային համար սիրոյ զգացում մը կ'իմանայ։

26. Աս երկու տեսակ զգացողութիւններէն ի՞նչ կը ծնանի։

Երկու սկզբունք. Համակրութիւն՝ որ ամեն տեսակ սիրոյ, եւ Հակակրութիւն՝ որ ամեն տեսակ ատելութեան կամ դժկամակութեան սկզբունք է։

27. Բարոյական զգայնութիւնը շարժողը կամ արթնցնողն ի՞նչ է։

Մեզի նման մարդիկ են։ Բարոյական զգայնութեամբ կ'իմացուին սրտին բոլոր հեշտութիւններն ու վիշտերը։

28. Իմացական զգայնութիւնն ի՞նչ բանով կը շարժի կամ կ'արթննայ։

Մեր մտքին այլ եւ այլ ծանօթութիւններովը։ Աս զգայնութեամբ կ'իմանանք կամ կը զգանք մտքին բոլոր հեշտութիւններն ու վիշտերը։

Քաղցր կամ դառն բան մը ճաշակելէն յառաջ եկող զգացումները՝ Բնական զգայնութեան իրողութիւններ են։ Սիրելի առարկայի մը հետ միանալուն կամ անկէ բաժնուելուն զգացումները՝ Բարոյական զգայնութեան իրողութիւններ են։ Ճշմարտութիւն մը գիտնալու կամ չգիտնալու, եւ կամ գիտուն կամ տգէտ ըլլալուն զգացումները՝ մտաւոր զգայնութեան իրողութիւններ են։

29. Գրագիտութեան մէջ զգայնութիւն ըսելով ի՞նչ կ'իմացուի։

Կ'իմացուի սրտին այն բնական պատրաստութիւնը որով մէկը դիւրաւ կ'ընդունի ուրախութեան, տրտմութեան, կարեկցութեան եւ ուրիշ կրից այլ եւ այլ տպաւորութիւնները։

## 2. Իմացողութիւն.

30. Իմացողութիւնն ի՞նչ է։

Իմացողութիւնը բան մը ճանչնալու ընդհանուր կարողութիւնն է, եւ կը կոչուի նաեւ ճանաչողութիւն։

31. Իմացողութեան կարողութիւնը քանի՞ կը բաժնուի.

Իմացողութեան կարողութիւնը դարձեալ կը բաժնուի երեք կարողութեանց որ են․ Գիտակցութիւն, Արտաքին ըմբռնում եւ Բան։

32․ Գիտակցութիւնն ինչ է։

Գիտակցութիւնը որ Ներքին զգայութիւն ալ կ'ըսուի՝ այն կարողութիւնն է որով հոգին ինքզինք կը ճանչնայ, իբրեւ գոյ, իբրեւ այս ինչ իմացական վիճակի մէջ գտնուող, կամ իբրեւ այս ինչ իմացական գործողութիւնը կատարող (4)։ Զոր օրինակ․ գիտնալս թէ այս ինչ ցաւը կը զգամ, կամ այս ինչ վայրկենիս մէջ փիլիսոփայութեան վրայ կը կարդամ կամ կը խօսիմ՝ գիտակցութեանս կամ ներքին զգայութեանս վկայութեամբն է․ այնպէս որ եթէ ոք ինծի ըսելու ըլլայ թէ Այն ցաւը չես զգար կամ թէ կարդացածդ փիլիսոփայութիւն չէ այլ թուաբանութիւն է, այն մարդուն համար կըսեմ թէ կամ զիս ծաղր կ'ընէ եւ կամ յիմար է, քանզի գիտակցութեանս կամ ներքին զգայութեանս հակառակ խօսեցաւ։

Առողջ գիտակցութեան տուած վկայութեան ճշմարտութիւնը բացայայտ եւ անհակառակելի է։

33․ Ո՞ր գաղափարներն են որ ներքին զգայութեան միջոցաւ ունինք։

Մէկութեան եւ Պարզութեան գաղափարները, քանզի մինչդեռ միտքն ամեն մարմին մասունքներէ բաղկացեալ եւ բաժանելի գիտէ, եւ գիտակցութիւնը միայն ինքզինք մի եւ անբաժին կը ճանչնայ, կը հետեւի թէ հոգին միութեան գաղափարը գիտակցութեան կամ ներքին զգայութեան միջոցաւ ունի։ Նոյնպէս, մինչ զգայութիւնները մտքին երեւոյթի

միայն գաղափար կու տան, եւ գիտակցութիւնը ինքզինք իր գործողութիւններուն պատճառ կը ճանչնայ, ասկէ կը հետեւի թէ հոգին պատճառի գաղափարն ալ ներքին զգայութենէն կ'առնու, այսինքն թէ ինչպէս որ ինք պատճառ է իր գործողութիւններուն, նոյնպէս ամէն երեւոյթ իր պատճառն ունի։

34. Արտաքին ըմբռնումն ինչ է։

Արտաքին ըմբռնումն այն կարողութիւնն է որով հոգին իրմէ դուրս նիւթական առարկաները, կամ բնական (ֆիզիքական) աշխարհքը կը ճանչնայ արտաքին (հինգ) զգայարանաց միջոցաւ։ Շօշափմամբ կ'ունենանք տարածութեան, ձեւոյ, կարծրութեան եւ ուրիշ ասոնց նման յատկութեանց գաղափարներ. տեսութեամբ՝ գունոյ, նաեւ տարածութեան եւ ձեւոյ գաղափարներ. լսելեօք՝ ձայնի, հոտոտելեօք՝ հոտոյ, ճաշակելեօք՝ համի գաղափարները։ Հինգ զգայութիւններէն երեքը, այսինքն՝ տեսանելիքը, հոտոտելիքն ու լսելիքը առարկաներուն ըրած տպաւորութիւնը հեռուէն կամ միջնորդաբար կ'ընդունին. միւս երկուքը, շօշափելիքն ու ճաշակելիքը, մերձաւորութեամբ կամ անմիջնորդաբար։

Հոգւոյն առողջ վիճակին մէջ արտաքին ըմբռնման տուած վկայութիւնն ալ ստոյգ եւ անհակառակելի է, եթէ հոգին այն վկայութիւնն առարկային յատուկ եղող զգայութեան միջոցաւ առած է։

35. Բանն ինչ է։

Բան կը կոչուի ան կարողութիւնը որով հոգին վերացեալ գաղափարներ եւ սկզբունքներ կ'ըմբռնէ։

36. Վերացեալ գաղափարները որո՞նք են։

Վերացեալ կը կոչուին այն գաղափարները զորոնք թէպէտ հաղին առարկաներէ եւ առարկաներու պատճառաւ կ'ունենանք, բայց բուն առարկաներուն գաղափարը չեն։

Զոր օրինակ սենեկիս մէջ վարդ մը ունիմ. ասոր, երբ անհատ վարդ, գաղափարը՝ վերացեալ չէ. բայց այն վարդին գոյնին կամ տարածութեանը եւ ուրիշ յատկութիւններուն գաղափարները, դարձեալ սա գաղափարները թէ այն վարդը գոյացութիւն մը ունի որուն վրայ կը կենան այն յատկութիւնները, եւ պատճառ մը՝ որուն ինք արդիւնքը կամ երեւոյթն է, բոլոր սա գաղափարները վերացեալ են, եւ Առաջին գաղափարներ կամ ծանօթութիւններ կը կոչուին։

37. Առաջին գաղափարները քանի՞ տեսակ են։

Երկու. Ներընդունական կամ Դիպուածոյ եւ Հարկաւոր։

38. Ներընդունական կամ դիպուածոյ գաղափարները որո՞նք են։

Ներընդունական կամ դիպուածոյ գաղափարները իրերուն բնութեանը կամ էական յատկութիւններուն գաղափարներն են. ինչպէս՝ հոգւոյն կամ Ն.ին եւ անոր գործողութիւններուն գաղափարները, մարմնոյ տարածութեանը, գունոյն գաղափարները եւ ուրիշ ասոնց՝ նմանք, եւ Ներընդունական կ'ըսուին, քանզի կախում ունին առարկաներէ որոնք կան, թէպէտ կրնային չըլլալ։

39. Հարկաւոր գաղափարները որո՞նք են։

Անոնք են որոնք իրերէ կամ առարկաներէ կախում չունին, ինչպէս են տեւողութեան, միջոցի,

անսահմանի, պատճառի, արդիւնքի, գոյացութեան եւ ուրիշ ասոնց նման գաղափարներու։

Ասոնք հարկաւոր գաղափարներ կը կոչուին, քանզի հոգին ասոնք առարկաներուն վրայ չի տեսներ, այլ առարկաներ միայն առիթ կ'ըլլան հոգւոյն անմիջապէս զաս գաղափարներն ունենալու։ Զոր օրինակ՝ երբ հոգին առաջին անգամ երեւոյթ մը կը տեսնէ, իսկոյն ստուգութեամբ կը խորհի թէ այն երեւոյթը հարկաւ պատճառ մը ունի. արդ աս գաղափարը ոչ թէ երեւոյթին մէջ յատկութիւնն է որ զգայութեանց միջոցաւ մտքին կ'ազդուի, այլ երեւոյթէն անկախ հարկաւոր ճշմարտութիւն մըն է. երեւոյթը կամ առարկան մտքին առիթ միայն կ'ըլլայ որ այն գաղափարին կու գայ։ Այսպէս պէտք է իմանալ տեւողութեան, միջոցի, գոյացութեան եւ ուրիշ հարկաւոր գաղափարաց համար։

40. Սկզբունք ինչ է։

Սկզբունք կ'ըսուին այնպիսի ճշմարտութիւններ որոնք աւելի յայտնի ճշմարտութեամբ մը ապացուցանելու կարօտ չ'են, ոչ ալ կրնան հերքուիլ. զոր օրինակ՝ սա ճշմարտութիւնը թէ բոլորը իւր մասէն մեծ է։ Աս տեսակ յայտնի սկզբունք Առաջին ճշմարտութիւն, կամ աքսիոմ (առած) կը կոչուին, եւ հարկաւոր ճշմարտութիւններ են։

Ընդհականակն կան այնպիսի ճշմարտութիւններ որոնք առաջին չեն, այլ ուրիշ ճշմարտութիւններէ կամ աքսիոմներէ հետեւած են. զոր օրինակ՝ Մոլորակներուն արեւին բոլորտիքը ձուաձեւ շրջան ընելուն ճշմարտութիւնը, կամ եղջերաւոր անասնոց որոճացող ըլլալուն սկզբունքը, որոնք մակածու-

թեամբ ապացուցուած ճշմարտութիւններ են։ Այս տեսակ ճշմարտութեանց Երկրորդական կամ Ապացուցեալ ճշմարտութիւն կ'ըսուի։

41. Առաջին գաղափարներուն եւ ճշմարտութիւններուն գլխաւոր աղբիւրը միտն է։

Բանը։ Այս կարողութեամբ է որ ուսողութիւնը (մաթէմաթիգան) մեծութեան (քանակութեան եւ տարածութեան), Տրամաբանութիւնը՝ ճշմարտին, բարոյականը՝ բարւոյն, իրաւագիտութիւնն՝ արդարին, գեղարուեստները՝ գեղեցկին, բնազանցութիւնը (վերացեալ գաղափարաց գիտութիւնը)՝ էակի, գոյացութեան, անսահմանին, բացարձակին, եւայլն, վերացեալ գաղափարներն իրենց առարկայ ըրած են։

Այս կարողութեամբ դարձեալ ամեն գիտութիւն առաջին ճշմարտութիւններ կամ աքսիոմներ գտած է. զորօրինակ, քերականութիւնը՝ թէ Առանց բայի խօսք չըլլար. Տրամաբանութիւնը՝ թէ Ամեն նախադասութիւն ճշմարիտ կամ սուտ է. Ուսողութիւնը՝ թէ Ամբողջ մը իւր մասէն մեծ է. բարոյականը՝ թէ Ուրիշներուն ընելու չենք ինչ որ չենք ուզեր որ ուրիշք մեզի ընէ. Բնազանցութիւնը՝ թէ Ամեն գործ կամ արդիւնք իր պատճառն ունի, այլովքն հանդերձ։

42. Այս կարողութեան միջոցաւ հոգին ինչ գըլխաւոր զգացումներ կ'ունենայ։

Այս կարողութեան միջոցաւ հոգին կ'ունենայ Ճշմարտի եւ Ստոյ, Բարւոյ եւ Չարի, Գեղեցկի եւ Տձեւոյ, Սրբոյ եւ Անսրբոյ, Իրաւանց եւ Պարտաւորութեան, Արդեանց եւ Ապարդեանց եւ ուրիշ

անթիւ զգացումներ, որոնք կը կացուցանեն մարդուս գերազանցութիւնն ուրիշ երկրաւոր էակներուն մէջ։

43․ Հոգին իր վերոյիշեալ կարողութիւնները գործածելու մէջ ինչ մասաւոր գործողութիւններ կը կատարէ։

Քանի մը գլխաւոր գործողութիւններ որ են․ Մտադրութիւն, Բաղդատութիւն, Դատողութիւն, Իմաստասիրութիւն, Վերացում, Համրացում, Յիշողութիւն, Գաղափարաց զուգորդութիւն եւ Երեւակայութիւն։ Մտքին աս գործողութիւնները ոմանք բանին երկրորդական կարողութիւնները կը կոչեն։

44․ Մտադրութիւնն ինչ է։

Մտադրութիւնն այն կարողութիւնն է որով միտքը երբ թէ կը դիմէ առարկայի մը, ինքզինք բոլորովին անոր վրայ կը սեւեռէ, որպէս զի առարկան աղէկ ճանչնայ։ Զգայնութեամբ երբ թէ կը տեսնենք, կը լսենք մտօք․ մտադրութեամբ երբ թէ կը նայինք, ունկն կ'ընենք մտօք։ Ըսել է թէ ինչպէս որ աչքը բան մը ոչ միայն կը տեսնէ, այլ եւ անոր կը դառնայ եւ անոր վրայ աւելի կամ նուազ երկայն ատեն կը կենայ, նոյնպէս միտքը ոչ միայն կ'ըմբռնէ կամ կ'իմանայ, այլ եւ կրնայ ըմբռնած կամ իմացած բանին վրայ դառնալ եւ անոր վրայ քիչ կամ շատ երկայն ատեն կենալ․ մտքին աս կարողութիւնն է Մտադրութիւնը։ Զգայնութիւնք կրաւորական է, մտադրութիւնը՝ ներգործական։

45․ Մտադրութիւնը հասարակ լեզուի մէջ ինչ կը կոչուի։

Մտադրութիւնը հասարակ լեզուի մէջ կը կոչուի Դիտողութիւն եւ Խորհրդածութիւն ։ Երբ մեր արտաքին զգայարանքները նիւթական կամ բնական (ֆիզիքական) առարկաներու վրայ կը սեւեռենք, այն մտադրութիւնը Դիտողութիւն է․ երբ մեր միտքը հոգեւոր կամ իմացական (աննիւթ) գաղափարի կամ խորհրդութեան մը վրայ կը սեւեռենք, այն մտադրութեանը Խորհրդածութիւն կ'ըսուի։

46. Բաղդատութիւնն ինչ է։

Բաղդատութիւնն ալ տեսակ մը մտադրութիւն է։

47. Մտադրութեան եւ բաղդատութեան մէջ տեղ եղած տարբերութիւնն ինչ է։

Երբ մեր դիտածը մի միայն առարկայ կամ իրողութիւն է, մտքին գործողութիւնը Մտադրութիւն է․ երբ մեր դիտածը երկու առարկայի կամ իրողութեան իրարու հետ ունեցած որ եւ իցէ մէկ յարաբերութիւնն է, զոր օրինակ անոնց իրարու համեմատութեամբ քանակութիւնը, շարժումը, մտքին այն գործողութիւնը կը կոչուի բաղդատութիւն։ Գալիլէոս մտադրութեամբ գտաւ մարմնոց անկման մէջ անոնց արագութեան օրէնքը․ Նեւտոն բաղդատութեամբ գտաւ ծանրութեան կամ ձգողութեան օրէնքը։

48. Դատողութիւնն ինչ է։

Դատողութիւնն այն գործողութիւնն է որով միտքը երկու ծանօթ առարկաներու կամ իրողութեանց մէջ տեղ եղած յարմարութիւնը կամ անյարմարութիւնը կը տեսնէ եւ կը հաստատէ։ Զոր օրինակ՝ ծաղիկ մը կը տեսնեմ եւ կը հարցունեմ թէ ինչ ծաղիկ է․ ինծի պատասխան կը տրուի թէ Վարդ է․

ուրիշ անգամ մը անոր ճիշդ նման ծաղիկ մը տեսնելուս պէս՝ իսկոյն կ'ըսեմ թէ Աս ծաղիկը վարդ է. կամ անկէ տարբեր ծաղիկ մը կը տեսնեմ եւ կ'ըսեմ թէ Աս ծաղիկը վարդ չ'է։ Ասոնք դատողութիւն են. առաջինը Հաստատական, երկրորդը՝ ժխտական կամ Բացասական։ Դատողութիւն բառը ոչ միայն դատելու կարողութիւնը, այլ եւ նոյն իսկ գործողութիւնը եւ անոր արդիւնքը կը նշանակէ։

49. Դատողութիւնը երբ խօսքով կը բացատրուի ինչ կը կոչուի։

Նախադասութիւն կը կոչուի։ Նախադասութիւնն ալ կրնայ հաստատական ըլլալ, ինչպէս՝ Երկիրը գնդաձեւ է. կրնայ ժխտական ալ ըլլալ, զոր օրինակ՝ Երկիրս անշարժ չ'է։

50. Իմաստաւորութիւնն ինչ է։

Իմաստաւորութիւնը որ Տրամաբանութիւն ալ կ'ըսուի՝ այն գործողութիւնը կամ կարողութիւնն է որով միտքը նոր դատողութիւն մը կը հանէ ուրիշ դատողութենէ։ Զոր օրինակ՝ գիտեմ որ ապակին կը կոտրի, անոր համար երբ ապակի գաւաթ մը կ'ունենամ, գիտեմ որ ապակի ըլլալուն համար պէտք է որ կոտրի, եթէ զգուշութեամբ չպահեմ. Բոյս մը կամ արմատ մը մէկ կամ քանի մը անգամ կ'ուտեմ, եւ կը տեսնեմ որ ինծի այս ինչ վնասը կամ օգուտը կ'ընէ; ասկէ կը հետեւցնեմ որ այն բոյսը կամ արմատն այն ինչ վնասակար կամ օգտակար զօրութիւնն ունի. եւ եթէ ուրիշ մը իմ նոյնը կերած պարագաներուս մէջ ուտէ; կ'ըսեմ թէ նոյն վնասը կամ օգուտը պիտի զգայ։ Ասոնքս ալ գործողութիւններն իմաստաւորութիւն են։

Ան իրողութիւնները որոնք ճշմարիտ են, ինչպէս վերի օրինակին մէջ ապակւոյն բեկանուտ ըլլալը, ապացոյց կը կոչուին. եւ այսպէս ապացոյցները ուրիշ ճշմարտութիւն մը, զոր օրինակ՝ գաւաթին բեկանելի ըլլալը, հաստեցունելու՝ ապացուցանել, ապացոյց կամ փաստ տալ կ'ըսուի։ Իմաստասիրութեամբ հաստատուած դատողութիւնն ալ՝ Իմաստասիրութիւն կրնայ կոչուիլ։

51. Իմաստասիրելը քանի կերպով կրնայ ըլլալ։

Երկու կերպով. 1. Ընդհանրէ՝ Մասնաւորի, կամ որ նոյն է՝ Սկզբունքէն հետեւութեան իջնելով. եւ 2. Մասնաւորէ՝ Ընդհանրի, կամ Հետեւութենէ սկզբունքի ելլելով։

Զոր օրինակ՝ սա նախադասութեան մէջ. Մոլութիւնն ատելի է. մոլութիւնն ընդհանուր գաղափար մըն է եւ իր մէջ շատ մը մասնաւոր գաղափարներ կը պարունակէ, այսինքն՝ բարկութիւն, հպարտութիւն, ստախօսութիւն, եւայլն. ուստի այն ընդհանուր գաղափարէն, մոլութենէն՝ կրնանք աս մասնաւորներուն իջնելով իմաստասիրել այսպէս. Մոլութիւնն ատելի է. ապա Բարկութիւնը, հպարտութիւնը, եւայլք ալ որ մոլութիւն են՝ ատելի են։ Աս իմաստասիրութիւնն ահա ընդհանրէ առ մասնաւոր է։

Ընդ հակառակն՝ սա նախադասութեան մէջ. Բարկութիւնը, Հպարտութիւնը, Ստախօսութիւնը եւայլն, ատելի են. Բարկութիւն, Հպարտութիւն, Ստախօսութիւն մասնաւոր գաղափարներ են, իրենց ընդհանուր գաղափարին, այսինքն մոլութեան մէջ կը պարունակուին. ուստի կրնանք իմաստասիրել այսպէս. Բարկութիւնը, Հպարտութիւնը, Ստախօ-

ստութիւնը առնլի են. նոյն բաները մոլութիւն են, այս Մոլութիւնն առնլի է։ Աս իմաստասիրութիւնն ալ Մասնաւորէ առ Ընդհանուր է։

52. Վերացումն ինչ է։

Վերացումն այն գործողութիւնն է որով միտքը յատկութիւններն՝ իրերէն եւ իրարմէ անջատելով զատ կ՚ըմբռնէ, թէպէտ յատկութիւնները բնութեան մէջ զատ չեն կրնար կենալ։ Այսպէս այդ եւ այդ հոտաւէտ առարկաներ տեսնելով հոտոյ գաղափարն առնելէն ետքը, հոտոյ վերացեալ գաղափարը կ՚ունենանք, այսինքն՝ հոտը զատ կրնանք ըմբռնել, թէպէտ առանց մասնաւոր առարկայի մը բնութեան մէջ լոկ հոտ չի կրնար ըլլալ։ Աս գործողութեան արդիւնքն ալ նոյն բառով վերացում կը կոչուի։

53. Վերացումն ինչ առաւելութիւն ունի։

Վերացումը որ վերլուծելու համար էական է՝ մարդկային իմացականութեան գլխաւոր կարողութիւնն է, այնպէս որ առանց անոր մարդկային իմացականութիւնը չէր կրնար ըլլալ այնպէս՝ ինչպէս որ է։ Վերջապէս՝ վերացումը գաղափարաց եւ անոնց նշանը եղող բառից պատճառն է։

54. Հանրացումն ինչ է։

Հանրացումն այն կարողութիւնն է որով միտքն իր վերացեալ գաղափարները մի եւ նոյն դասի կամ ամեն նոյնասեռ անհատի կու տայ։ Զոր օրինակ՝ միտքն աս կարողութեամբ ամեն տեսած վարդը ոչ իբրեւ մասնաւոր կամ անհատ վարդ մը կը նկատէ, այլ իբրեւ այս ինչ (այսինքն վարդի) ընդհանուր յատկութիւններն ունեցող դասի մը ծաղիկ, այնպէս որ Վարդ ըսելով դաս մը բան կ՚իմացուի, ոչ

թէ անհատ մը։ Այս տեսակ գաղափարներ Հանրական կամ Ընդհանուր գաղափար կը կոչուին, եւ զանոնք նշանակող բառերն ալ Հանրական կամ Հասարակ բառ կ'ըսուին։ Ամէն գիտութիւն Ընդհանուր գաղափարներու վրայ հիմնուած է։

55. Յիշողութիւնն ինչ է։

Յիշողութիւնն այն գործողութիւնը կամ կարողութիւնն է որով միտքը ստացած գաղափարները կը պահէ, կամ նորէն կը կոչէ։

56. Գաղափարաց զուգորդութիւնն ինչ է։

Գաղափարաց զուգորդութիւնն այն գործողութիւնն է որով միտքը, յիշողութեան միջոցաւ ըրածին պէս, կը պահէ կամ նորէն կը կոչէ իր արդէն ունեցած գաղափարները։

57. Յիշողութեան եւ գաղափարաց զուգորդութեան մէջ ինչ տարբերութիւն կայ։

Միտքը յիշողութեամբ կը պահէ կամ կը յիշէ իր գաղափարներն ուրիշ բանէ մը անկախ. իսկ գաղափարաց զուգորդութեամբ կը պահէ կամ կը յիշէ իր գաղափարները՝ զանոնք ուրիշ գաղափարներու հետ կապելով կամ կցելով։ Գաղափարաց զուգորդութեան մէջ գաղափարաց կապն է իրերուն իրարու հետ ունեցած այլ եւ այլ յարաբերութիւնը. զոր օրինակ՝ իրարու նմանութիւնը եւ հակառակութիւնը, ժամանակով կամ տեղւով իրարու կից ըլլալը, իրարու պատճառ եւ արդիւնք, իրարու վախճան եւ միջոց, իրարու նկատմամբ գոյացութիւն եւ յատկութիւն, սկզբունք եւ հետեւանք ըլլալը, եւ ուրիշ ասոնց նմաններ։

Այսպէս երբ բան մը կ'ըմբռնեմ, յիշեալ յարա-

բերութեանց մէկուն մէջ կ՚ըմբռնեմ․ զոր օրինակ, եթէ երբէք բարկացած եմ, բարկութիւնս հարկապատճառի մը տուած եմ, եւ կամ թերեւս անոր արդիւնք մ՚ալ ընծայած եմ․ ուստի քանի որ այն բարկութիւնս միտքս է, կամ միտքս կը բերեմ, այն պատճառ եւ արդիւնք ենթադրած բաներս ալ միտքս են կամ միտքս կը բերեմ։

58․ Մեր դատողութեանց ուղիղ կամ սխալ ըլլալն ինչ բանէ կախում ունի։

Մեր դատողութեանց ուղիղ կամ սխալ ըլլալը շատ անգամ գաղափարաց զուգորդութենէն կախում ունի։ Երբ մեր գաղափարները գէշ կամ ծուռ կերպով կը զուգորդենք, այսինքն՝ երբ զանոնք սխալ յարաբերութեան մէջ կը նկատենք, զոր օրինակ՝ պատճառ կը կարծենք ան որ պատճառ չէ, կամ արդիւնք՝ ան որ արդիւնք չէ, եւայլն, մեր դատողութիւնը սխալ կ՚ըլլայ։ Ասկէ կը ծագին մոլորութիւնք, անկատար ծանօթութիւնք, խմաստակութիւնք, նախապաշարմունք, եւ այլ սոյնին նըմանք։ Ասոր պէտք է ջանալ որ մեր գաղափարներն իրենց օրինաւոր եւ ճիշդ յարաբերութիւններուն համեմատ իրարու զուգորդենք։

59․ Երեւակայութիւնն ինչ է։

Երեւակայութիւն կ՚ըսուի այն գործողութիւնը որով հոգին նիւթական իրաց պատկերներ իր տեսութեան առջեւ կը բերէ, պատկերին առարկան թէ բնութեան մէջ գոյ ըլլայ եւ թէ չըլլայ։ Երեւակայութեամբ է որ վարդի մը, կամ թեւաւոր ձիու մը պատկերը կրնամ մտօք տեսնել, թէպէտ աչքիս առջեւ ոչ վարդ կայ ոչ ալ թեւաւոր ձի (9)։

**60.** Գրագիտութեան մէջ երեւակայութիւն ի՞նչ կը նշանակէ։

Գրագիտութեան մէջ երեւակայութիւն ըսելով կ'իմացուի այն գործողութիւնը որով միտքն իր արդէն ունեցած գաղափարները կամ զգացումները յիշողութեան մէջ բերելով՝ անոնցմէ այնպիսի բան մը կը ստեղծէ որ իրական գոյութիւն մը չունի եւ չի կրնար ունենալ։ Աս է ճարտարներու եւ բանաստեղծներու երեւակայութիւնը, որոնք գեղեցկին գաղափարն իբր իրական կ'երեւցունեն։

**61.** Երեւակայութեան եւ՝ յղացման մէջտեղ ի՞նչ տարբերութիւն կայ։

Երբ ստեղծումը կամ կեղծիքը, թէպէտ չինծու, բայց բնական կապակցութեան մէջ է՝ յղացում կ'ըսուի (9)։ Երբ ստեղծումը եղջերուաքաղ մըն է, երեւակայութիւն կ'ըսուի։

**62.** Երեւակայութեան գործը միշտ ստեղծում կամ կեղծիք է։

Երեւակայութեան գործն է նաեւ դէպք մը կամ իրողութիւն մը իւր ամէն պարագաներովը մէջ բերել։ Աս դէպքին մէջ իրողութիւնը ստուարացնելէ, նուազացնելէ կամ որ եւ իցէ կերպով այլայլելէ ըզգուշանալ պէտք է։

### 3. Գործունէութիւն.

**63.** Գործունէութիւնն ի՞նչ է։

Հոգւոյն գործողութիւն մը ընելու կարողութիւնն է։

**64.** Հոգին քանի՞ կերպով գործունեայ կամ գործող կ'երեւայ։

Երեք կերպով՝ Բնական ազդմամբ, Ունակութեամբ եւ կամաւ. ուստի եւ հոգին ունի գործելու երեք սկզբունք Բնական ազդում, Ունակութիւն եւ կամք։

65. Բնական ազդումն ինչ է։

Բնական ազդումն այն կարողութիւնն է որուն զօրութեամբը կատարուած գործողութեան մէջ հոգւոյն կողմանէ խորհրդածութիւն, նպատակի եւ միջոցի ճանաչում չերեւար։ Բնական ազդմամբ է որ նորածին տղան թեւը կամ ոտքը կը շարժէ, մօրը կաթը կը ծծէ։ Անասուններն մանաւանդ ունին գործելու աս սկզբունքը, եւ անով է որ շատ զարմանալի գործեր կը կատարեն, ինչպէս են թռչնոց եւ միջատներէն եւ ուրիշ անասուններէն ոմանց իրենց համար յատուկ բոյներ շինելը, եւ իրենց պահպանութեանը համար կերակուր պատրաստելը. ինչպէս մեղուին եւ մրջեան։

66. Ունակութիւնն ինչ է։

Ունակութիւնը մարդուս առանց խորհրդածութեան գործելու այն կերպն է որ առաջուց մի եւ նոյն մտածութիւնը կամ գործողութիւնը ստէպ կրկնած ըլլալէն կը պատճառի։

67. Բնական ազդման եւ Ունակութեան տարբերութիւնն ինչ է։

Առաջինը բոլորովին ինքնադէպ է եւ մարդս բարոյապէս պատասխանատու չի թողուր. իսկ երկրորդին գէթ պատճառը կամ զայն յառաջ բերող գործողութիւնը կամաւոր է։

68. Կամքն ինչ է։

Այն կարողութիւնն է որով հոգին բան մը կ՚ընէ՝ գիտնալով որ կրնայ չընել, եւ կրնայ դադրե-

ցընել կամ չարունակել։ Ուստի կամքին էական յատկութիւնն է ազատութիւնը որուն մեր գիտակցութիւնը կը վկայէ։

69. Կամաւոր գործողութեանց մէջ զանազանելու ինչ բաներ կան։

Հոգւոյն կողմանէ Անձնիշխանութիւն, այսինքն՝ հարկի տակ չըլլալ, միջոցները կամ չարժանիքները քննել, որոշել եւ գործադրել։ Կամաւոր գործողութեանց մէջ (ընելու կամ չընելու) ազատութեան այս սկզբունքներն ըլլալուն համար է որ մարդս անոնց համար պատասխանատու է։

## Գ. ՄՏՔԻՆ ԿԱՐՈՂՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ ԳՈՐԾԱԾՈՒԹԻՒՆԸ

70. Միտքն իր կարողութիւններն ինչ բանի կը գործածէ։

Բան մը ճանչնալու եւ ճանչցնելու, կամ ճըշմարտութիւն մը փնտռելու եւ կամ ապացուցանելու։

71. Այս գործածութիւնն ինչպէս ըլլալու է։

Այս գործածութիւնը պիտի ըլլայ հարկաւ փնտռել կամ ապացուցանել ուզուած առարկային կամ իրողութեան բնութեանը համաձայն կերպով կամ ճամբով մը որուն Մեթոտ կ'ըսուի։

72. Միտքն այս ճամբան կամ Մեթոտն ինչ գործողութիւններով կը կատարէ։

Այլ եւ այլ բաղադրեալ գործողութիւններով, այսինքն՝ այնպիսի գործողութիւններով որոնց մէջ մտքին այլ եւ այլ կարողութիւններն ու պարզ գործողութիւնները, զոր օրինակ՝ մտադրութիւնը, յի-

շողութիւնը, դատողութիւն եւայլն, կը զուգընթանան կամ մէկտեղ կը գործեն։

73. Ճշմարտութիւնը փնտռելու եւ կամ ապացուցանելու ճամբուն մէջ մտքին գործածած բաղադրեալ կամ խառն գործողութիւնները որո՞նք են։

Սահմանել, Դիտել, Բաժնել, Դասաւորել, Լուծել, Բաղադրել, Ապացուցանել, Ենթադրել։

74. Սահմանելն ի՞նչ է։

Երբ գաղափար մը պարզ է, այսինքն այլ եւ այլ յատկութիւններէ բաղադրեալ չըլլալով՝ մէկէն կը ճանչցուի, ինչպէս են քառակուսւոյ, եռանկեան գաղափարները, եւ կամ եթէ գաղափար կամ առարկայ մը, թէեւ բաղադրեալ, քննուած, փորձուած եւ յստակ ճանչցուած է, ինչպէս որոտման կամ ելեքտրական երեւոյթներու գաղափարը, զայն իր էական յատկութիւններովը կ'որոշենք կամ նըկարագրենք, որպէս զի ուրիշ գաղափարներու հետ չշփոթի. աս գործողութեան սահմանել կ'ըսուի։ Ուստի սահմանը բանի մը մեկնութիւնն է, եւ սահմանեալ իրին հետ մի եւ նոյն է՝ թէպէտ անկէ աւելի որոշ եւ բացայայտ։

75. Քանի՞ տեսակ սահման կայ։

Երկու՝ Բառից եւ Իրաց։

76. Բառ սահմանելուն նպատակն ի՞նչ է։

Բառ մը սահմանելուն նպատակն է ճանչցնել թէ այս ինչ բառով զոր կը գործածենք՝ ինչ ըսել կ'ուզենք։ Մեր գործածած բառերուն միտքն այսպէս սահմանել շատ անգամ կարեւոր է, մոլորութեան, վէճի եւ սխալ հասկցողութեան առջեւն առնելու համար։

77. Իր մը սահմանելուն նպատակն ինչ է ։

Իր մը սահմանելուն նպատակն է զայն ուրիշ որ և իցէ առարկայէ զատել կամ որոշել ։

78. Ճիշդ կամ փիլիսոփայական սահման մը ինչ բաներէ բաղկացեալ ըլլալու է ։

Այսպիսի սահման մը բաղկացած ըլլալու է ընդհանուր գաղափարէ մը որ Մեծ եզր կը կոչուի, և մասնաւոր գաղափարէ մը որ Փոքր եզր կը կոչուի ։ Մեծ եզրը սահմանեալ իրին սեռը կը ցուցունէ, Փոքր եզրը կը ցուցունէ անոր էական յատկութիւնը որ Տարբերութիւն ալ կ՚ըսուի ։ Զոր օրինակ՝ Մարդն է կենդանի բանական ․ կենդանին որ մեծ եզրն է՝ կը ցուցունէ ընդհանուր գաղափար մը, այսինքն՝ սեռը, բոլոր կենդանեաց դասը՝ որուն մարդ կը վերաբերի ․ Բանականը որ փոքր եզրն է՝ կը ցուցունէ մասնաւոր գաղափարը, այսինքն՝ տարբերութիւնը, ըստ որում բանականութիւնն է որով մարդ տեսակը կենդանւոյ ուրիշ բոլոր տեսակներէն կը տարբերի ։

79. Աղէկ սահմանի մը համար ինչ բան կը պահանջուի ։

Կը պահանջուի

1. Որ յատուկ ըլլայ,ապա թէ ոչ անպիտան կ՚ըլլայ ։

2. Ամփոփ ըլլայ, այսինքն՝ ամենէն կարճ կերպով ․ աւելորդ բառեր սահմանը մութ կ՚ընեն ։

3. Փոխադարձ ըլլայ, այսինքն՝ սահմանը սահմանելոյն հաւասար ըլլայ և անոր միայն պատշաճի, այնպէս որ երկուքը, սահմանն ու սահմանեալը, իրարու տեղ դնել կարելի ըլլայ ․ ինչպէս է վերի սահմանը Մարդն է բանական կենդանի, ուր

կրնանք ըսել. Բանական կենդանին է մարդ։

Դ. Ինչպէս ըսուեցաւ՝ բաղկացած ըլլայ մերձաւոր սեռէ եւ տեսակարար տարբերութենէ. ուստի ըստ օրինի չէր ըլլար մարդը սահմանել. Բանական էակ. քանզի էակի գաղափարը մարդուս մօտագոյն սեռը չէ. էակով ամէն գոյ եղող բան կ'իմացուի, ուր կենդանին կը ցուցունէ մինակ շունչ կամ կենդանութիւն ունեցող էակները՝ որոնց մարդ 'ի մօտոյ կը վերաբերի։ Նոյնպէս ըստ օրինի չէր ըլլար ըսել. Մարդն է կենդանի երկոտանի. երկոտանին մարդուն տեսակարար, այսինքն՝ մարդ տեսակը միայն կացուցանող, յատկութիւն մը չէ։

80. Դիտողութիւնն ինչ է։

Դիտողութիւն՝ մտադրութիւնը բնական երեւոյթներու վրայ աւելի երկար կամ կրկին եւ կրկին ուղղելուն կ'ըսուի։ Դիտողութիւնը պէտք է որ դիտուած իրին յատուկ գործարանով կամ զգայարանքով կատարուի. այսինքն՝ տեսանելի յատկութիւններ աչքով դիտուին, զննելի յատկութիւններ՝ շօշափելեօք, եւայլն (45)։

81. Դիտողութիւնն ինչ գործողութիւններով յառաջ կ'երթայ։

Բաժանմամբ եւ դասաւորութեամբ։

82. Բաժանումն ինչ է։

Բաժանումն է զատել ամբողջ մը իր բաղադրեալ մասերուն, եւ կամ սեռ մը իր տեսակներուն կամ անհատական մասերուն։ Առաջին կերպն է անջատել կամ քայքայել Ֆիզիգապէս, եւ բանի մը գումարութիւնը (17) կը բաժնէ. երկրորդը բանի մը տարածութիւնը (17) կը բաժնէ, եւ բուն (բնազանցօրէն) բաժնել է։

83. Աղէկ բաժանումն ինչպէս ըլլալու է ։

Աղէկ բաժանումը պիտի ըլլայ ․

1. Ամբողջ ․ այսինքն՝ բաժանելոյն բոլոր տեսակները կամ զանազանութիւնները պիտի պարունակէ ։ Զոր օրինակ՝ ամբողջ չըլլար բաժանումը, եթէ մարդկային ազգը բաժնենք սպիտակ եւ սեւ, քանզի պղնձագոյն, թուխ եւ ուրիշ գունով մարդկային ցեղեր ալ կան ։

2. Բաժանման մասերն իրարու հակադրեալ պիտի ըլլան ․ այսինքն՝ զանոնք իրարու վրայ ստորոգել կարելի պիտի չըլլայ ։ Զոր օրինակ, եթէ կենդանեաց դասը բաժնենք՝ երկոտանի, չորքոտանի, մսակեր, խոտակեր, եւայլն, շատ յոռի կ'ըլլայ բաժանումը, քանզի կրնանք ըսել ․ Մսակերը կամ խոտակերը չորքոտանի է ։

3. Անմիջական պիտի ըլլայ ․ այսինքն՝ բաժանումը պիտի պարունակէ առաջ՝ նախնական մասերը, յետոյ՝ երկրորդական մասերը կամ ստորաբաժանումները ։

84. Դասաւորութիւնն ինչ է ։

Դասաւորութիւնը բուն բաժանումն է (82), այսինքն սեռ մը իր տեսակներուն բաժնել, որով անհատներ իրենց նմանութեանցն ու տարբերութեանցը համեմատ 'ի դասս, 'ի սեռս եւ 'ի տեսակս, եւայլն, բաժանեալ կ'ըլլան ։

85. Դասաւորութիւնը քանի տեսակ է ։

Երկու ․ Արուեստական եւ Բնական ։

86. Արուեստական դասաւորութիւնն ինչ է ։

Արուեստական կ'ըլլայ դասաւորութիւնը, եթէ դաս մը բաներ արտաքին նմանութեանց նայելով բաժնենք ։ Այսպիսի դասաւորութիւն մը Դրութիւն կը

*կոչուի, ինչպէս է Լիննէյի Բուսաբանական դրութիւնը։ Բնական կ'ըլլայ դասաւորութիւնը, եթէ իրաց բնական յատկութիւններուն, կամ բնական կազմութեան կողմանէ անոնց աստիճանաւ իրարմէ աւելի կամ նուազ կատարելութեանը նայելով դասաւորենք։ Այսպիսի դասաւորութիւն մը Մեթոտ կ'ըսուի, ինչպէս են Ժիւսիւէօյի՝ Բուսաբանական, եւ Գիւվիէյի Կենդանաբանական Մեթոտները։*

87. *Փորձ ընելն ի՞նչ է։*

*Փորձ ընելը դիտողութեան մէկ մասնաւոր եղանակն է, որով, փոխանակ սպասելու որ երեւոյթ մը բնականօրէն յառաջ գայ, նոյնը մենք արուեստիւ յառաջ կը բերենք, որպէս զի դիտողութիւն ընելու ստէպ պատեհութիւն ունենանք։ Այսպէս բնական գիտութեանց, զոր օրինակ՝ ելեքտրականութեան, մագնիսականութեան, մեքենականութեան մէջ այլ եւ այլ փորձեր կ'ըլլան արուեստական կերպով, նոյն զօրութեանց բնական օրէնքներն ըստուգելու կամ ապացուցանելու համար։*

88. *Լուծելն ի՞նչ է։*

*Լուծել կամ վերլուծելն է առարկայի կամ գաղափարի մը յատկութիւնները վերացնելով, այսինքն՝ մտօք առարկայէն եւ իրարմէ զատելով, զանոնք մի առ մի ճանչնալ կամ ճանչցնել, երբ առարկան կամ գաղափարը պարզ չէ, այսինքն՝ այլ եւ այլ յատկութիւններէ բաղադրեալ է որոնք չեն կրնար մէկէն ճանչցուիլ։*

*Բնական մարմինները կը լուծուին, երբ անոնց բաղադրիչ մասերը կամ տարրներն իրարմէ կը զատենք, ինչպէս քիմիական գիտութեան մէջ։*

Առարկայի մը կազմիչ մասերը մեքենապէս քակելն ալ լուծել է. զոր օրինակ՝ ժամացոյց մը կամ մեքենայ մը։

89. Բաղադրելն ի՞նչ է։

Բաղադրելն է՝ վերոյիշեալ կերպերով լուծեալ գաղափարի կամ առարկայի մը վրայ ամբողջական տեղեկութիւն մը ունենալու համար՝ անիկա նորէն նկատել իբրեւ այս ինչ յատկութիւններէ կամ մասերէ բաղկացեալ ամբողջ մը. այսինքն՝ բոլոր մասերուն իրարու հետ ունեցած յարաբերութեանը մէջ։

90. Ի՞նչ տեսակ բաներու գաղափարներն են որ մէկէն չեն ճանչցուիր, ուստի եւ վերլուծուելու եւ բաղադրուելու կարօտ են։

Բնական (ֆիզիքական) առարկաներու, բարոյական եւ իմացական իրաց եւ իրողութեանց գաղափարները. զոր օրինակ՝ վարդին, խնձորին, որոտման, կառավարութեան, ազատութեան, իրաւանց եւ պարտաւորութեանց եւ ուրիշ անթիւ գաղափարներ։ Գաղափարի մը վերլուծութիւնը որչափ կատարեալ է, այնչափ կատարեալ կ'ըլլայ առարկային կամ իրողութեան վրայ եղած ծանօթութիւնը։

91. Գրագիտական մտօք լուծելն ի՞նչ է։

Գրագիտական մտօք լուծելը՝ գրուած մը իր մասերուն բաժնելն է։ Անիկա կ'ըլլայ նախ գրուածն իր զարդերէն մերկացնելով՝ տեսնելու համար թէ արդեօք գրուածին ընդհանուր իմաստը կամ նիւթը բաղկացնող մասնաւոր գաղափարներն ինքնին ճշմարիտ են, եւ անոնց իրարու նկատմամբ տրուած կապակցութիւնները բնական եւ ճիշդ են։ Աս զոր-

Ծողութիւնը կրկին օգտակարութիւն ունի, նախ ուղիղ իմաստասիրել (տրամախոհել), ոճին արտաքին փայլունէն չշլանալ ուսուի եւ չխաբուիլ կը սորվեցնէ. երկրորդ՝ կը ցուցնէ թէ աղէկ խորհող մատենագիրներ ինչ արուեստիւ իրենց ճշմարիտ գաղափարները գիտեն զարդարել, այնպէս որ խօսքը մաքին ուղղելու տեղն՝ միանգամայն աչուըններուն եւ սրտին կը խօսին. այսինքն՝ կրթելու հետ մէկտեղ նաեւ կը զուարճացնեն եւ կը շարժեն։

92. Միտքն ամեն ճշմարտութիւն վերոյիշեալ մեթոդով, այսինքն՝ դիտողութեամբ, բաժանմամբ կամ լուծմամբ եւ փորձով կը փնտռէ եւ կ'ապացուցանէ։

Ո՛չ. միտքը շատ անգամ կը ստիպուի ապացուցական ճամբան ընտրել, կամ ապացուցութեամբ յառաջ երթալ։

93. Ապացուցութիւնն ինչ է։

Ապացուցութիւն կ'ըսուի այն իմաստասիրական գործողութիւնը (50) որով միտքը նախադասութիւն մը կ'ապացուցանէ՝ անոր ճշմարիտ սկզբունքներու զօրաւոր մէկ հետեւութիւնն ըլլալը ցուցունելով։

94. Ապացուցանելը քանի կերպով կ'ըլլայ։

Երկու. Ընծայութենէ եւ Մակածութենէ։

95. Ընծայութիւնն ինչ է։

Ընծայութիւն կ'ըսուի մաքին իմաստասիրելու այն գործողութիւնը ուր ապացուցութիւնն ընդհանուր նախադասութենէ մըն է։

96. Ընդհանուր նախադասութիւնները քանի տեսակ են։

Երկու. Առաջին ճշմարտութիւն, (40) եւ Աքսիոմ կամ առած կոչուածները, որոնք ինքնին յայտնի եւ բացայայտ ըլլալով ապացուցանելու կարօտ չեն: Այսպէս են հետեւեալ սկզբունքները. Բոլորն իր մասերէն մեծ է. Մի եւ նոյն բանը չի կրնար մի եւ նոյն ժամանակի մէջ ըլլալ եւ չըլլալ. Ամէն արդիւնք պատճառ մը ունի. Բոլորէն մասը փոքր է. եւ ուրիշ ասանց նմաններ (4): Աս տեսակ նախադասութիւններէ հանուած հետեւութիւններն 'ի յառաջագունէ ապացուցուած կ'ըսուին: Երկրորդ. ան ճշմարտութիւնները որոնք ինքնին յայտնի չեն, այլ ուրիշ յայտնի ճշմարտութիւններէ հանուած կամ ապացուցուած են: Աս տեսակ, այսինքն՝ ապացուցեալ ճշմարտութիւններէ հանուած հետեւութիւններն ալ 'ի յետնագունէ ապացուցուած կ'ըսուին:

Զոր օրինակ՝ ինքնին յայտնի սկզբունք մըն է թէ ամէն գործ կամ արդիւնք պատճառ մը ունի. արդ որովհետեւ բնութեան մէջ այնպիսի զօրութիւններ կան որոնց պատճառը չենք տեսներ, կը հարկադրինք ընդունելու թէ անոնց մէկ ընդհանուր կամ առաջին պատճառը կայ: Աս ապացուցութիւնն 'ի յառաջագունէ է, քանզի եզրակացութիւնն ինքնին յայտնի եւ առաջին ճշմարտութենէ մը հետեւեցաւ:

—Փորձով ճանչցուած ճշմարտութիւն մըն է որ ամէն եղջերաւոր անասուն կ'որոճայ. եթէ գտնելու ըլլանք եղջերաւոր անասունոյ մը ոսկրոտին, կրնանք ստուգութեամբ ըսել թէ այն անասունը կ'որոճար: Ահա ապացութիւն մը 'ի յետնագունէ:

97. Ստկածութիւնն ինչ է.

Մտկածութիւնը որ Խելամտութիւն ալ կ'ըսուի՝

մտքին այն գործողութիւն է որով ոչ թէ ընծայութեան պէս սկզբունքէ կամ ապացուցեալ ճշմարտութենէ մը, այլ ծանօթ դէպքերէ անծանօթ դէպք մը կամ իրողութիւն մը կը հետեւցնենք։

98. Մակածութիւնը քանի՞ տեսակ է։

Երկու. Բուն մակածութիւն եւ Յարացոյց։

99. Բուն մակածութիւնն ի՞նչ է.

Բուն մակածութիւն է, երբ ծանօթ դէպքերէն ելած հետեւութիւնը՝ իրողութեանց օրէնքը կամ երեւոյթներու մշտատեւութիւնն է։ Զոր օրինակ՝ երբ ուրիշ մարդոց վրայ մեր յառաջ բերած մտաւոր գործողութիւններուն նման գործողութիւններ տեսնելով կը հետեւցնենք թէ անոնք ալ մեզի պէս զգայնութիւն, իմացողութիւն եւ կամք ունին։ Ահա օրէնք։—Արեւին այսօր ելլելը տեսնելով կը հետեւցնենք թէ երէկ ալ ելած էր, եւ այսուհետեւ ալ ամեն օր պիտի ելլէ։ Ահա մշտատեւութիւն։

100. Յարացոյցն ի՞նչ է։

Յարացոյց կ'ըսուի այն մակածութիւնն ուր ծանօթ դէպքերէն հանուած հետեւութիւնը մասնաւոր դէպք է։ Եթէ ծանօթ դէպքերն ու անծանօթ դէպքը մի եւ նոյն սեռի են, հետեւութիւնը [illegible] կ'ըսուի. եթէ տարբեր սեռի են, հետեւութիւնը [illegible] կ'ըսուի։ Զոր օրինակ՝ տեսնելով թէ իմ ճանչցած աշխարհականներս իրենց փառասիրութիւնը յագեցնելու համար ուրիշին կենացը չեն խնայեր, կը հետեւցնեմ թէ այս ինչ աշխարհականն ալ նոյն բնաւորութիւնն ունի։ Ահա փորձառութենէ հետեւութիւն։—Տեսնելով թէ այս ինչ տեսակ անասուններ այս ինչ տեսակ խոտն ու-

տելով կը մեռնին, կը հետեւցնեմ որ, եթէ մարդն ալ նոյն խոտէն ուտէ, պիտի մեռնի։ Ահա համգիտութենէ հետեւութիւն։

101. Յարացոյցը գրագիտական գրուածոց մէջ ինչպէս կը գործածուի։

Յարացոյցը գրագիտական գրուածոց մէջ կը գործածուի՝ առաջին նախադասութենէն առաջ երբ շաղկապը դնելով, եւ այս շաղկապը զանց ընելով. զոր օրինակ.

Եթէ հեթանոսք ներել գիտէին, որչափ եւս առաւել Քրիստոնեայք պէտք է որ վրէժխնդրութեան ոգիէն ազատ ըլլան։

102. Այն տեսակ գրուածոց մէջ յարացոյցին փաստերն ուստի՞ կ'առնուին։

Նմանութենէ, հակադրութենէ եւ գերազանցութենէ. ուստի ըստ ճարտասանից երեք տեսակ յարացոյց կայ. 'ի հաւասարէ, 'ի հակառակէ եւ 'ի զօրագունէ։

Ի հաւասարէ. Աստուած ներեց Դաւթի՝ ապաշխարելուն համար, ապա ուրիշ ապաշխարողներու ալ նոյնպէս պիտի ներէ։

Ի հակառակէ. Դատարկութիւնը բոլոր մոլութեանց մայրն է. ուրեմն աշխատութիւնն ընդ հակառակն մոլութեանց դէմ պատուար եւ դարման է։

Ի զօրագունէ. Հեթանոսք գիտէին անիրաւութեանց ներել. ապա որչափ եւս առաւել Քրիստոնեան պարտի ներել եւ չտալ տեղի վրէժխնդրութեան ոգւոյն։

103. Գրագիտական գրուածոց մէջ Մակածութիւնը նոյն ձեւով կրնա՞յ գործածուիլ։

Մակածութեան ձեւը ճարտասանական է. այս-

պէս աշխարհային մեծութեամբ յղփացեալ բայց չարութեամբ նշանաւոր թագաւորաց աղետալի վախճանը քննելէ, Տիրերի տառապանքը, Ներոնի սարսափը եւ ուրիշ ասոնց նման օրինակներ յիշելէ ետքը՝ կրնանք հետեւցնել թէ երջանկութիւնը չարագործներու համար չէ։

104. Ապացուցեալ նախադասութիւններ կամ դէպքեր որոնցմէ այսպէս հետեւութիւն կը հանենք՝ ինչ կը կոչուին։

Ապացոյց։

105. Իսկ հետեւութիւնը դեռ չապացուցուած ինչ կը կոչուի։

Խնդիր։

106. Խնդիր մը վերոյիշեալ գործողութեանց մէկովն ապացուցանելուն ինչ կ՚ըսուի։

Ձեռնարկութիւն կամ Պատճառաբանութիւն։

107. Ձեռնարկութիւն մը քանի կերպով կրնայ յառաջ բերուիլ։

Հինգ կերպով, որ են. Հաւաքաբանութիւն, Ըրնարք կամ Եզառած, Փաստորդ, Համաբարդութիւն, Երկայրաբանութիւն կամ Երկառած։

108. Հաւաքաբանութիւնն ինչ է։

Հաւաքաբանութիւնը ձեռնարկութիւն մըն է ուր երկու նախադասութենէ երրորդ մը կը հետեւցընենք. զոր օրինակ.

Մեզ երջանիկ ընող բանը պէտք է սիրել.
Արդ առաքինութիւնը մեզ երջանիկ կ՚ընէ,
Ապա առաքինութիւնը պէտք է սիրել։

109. Աս երեք նախադասութիւններն ինչ կը կոչուին։

Առջի երկու նախադասութիւնները որոնց առաջինը՝ Մեծագոյն, երկրորդը Փոքրագոյն կը կոչուին՝ ընդհանուր անուամբ Նախադրեալ կ'ըսուին. երրորդը Եզրակացութիւն կամ Հետեւութիւն կը կոչուի։ Հասարակ լեզուով Մեծագոյնը՝ ապացոյց, Փոքրագոյնը փաստ կ'ըսուի։

110. Առջի երկուքն ինչու համար Մեծագոյն եւ Փոքրագոյն կը կոչուին։

Առաջին նախադասութիւնը Մեծագոյն կը կոչուի, վասն զի Մեծ կամ Աւագ եզրը կը պարունակէ որ Պէտք է սիրել (սիրելի) բառն է. Երկրորդ նախադասութիւնը կ'ըսուի Փոքրագոյն, վասն զի Փոքր կամ Կրտսեր եզրը կը պարունակէ որ է Առաքինութիւն բառը։ Միւս երրորդ բառը Միջին եզր կը կոչուի, որ է Երջանիկ ընող խօսքը։

111. Հաւաքաբանութիւնը քանի՞ գլխաւոր կանոն ունի։

Հաւաքաբանութիւնը երկու գլխաւոր կանոն ունի, որովք ձեռնարկութեան հետեւական կամ ոչ հետեւական ըլլալը կ'իմացուի։ Աս կանոններն են. 1. Միջին եզրը պէտք է որ նախադրելոց մէջ մի եւ նոյն իմաստն ունենայ, այսինքն՝ հոմ չըլլայ եւ գոնէ անգամ մը ընդհանուր ըլլայ։ 2. Աւագ կամ Կրտսեր եզրները պէտք չէ որ Եզրակացութեան մէջ աւելի ընդարձակ ըլլան քան թէ նախադրելոց մէջ։

112. Հնարքն ի՞նչ է։

Հնարքը հաւաքաբանութիւն մըն է ուր նախադրելոց մէկը պակաս է, բայց աս պակասը դիւրաւ կրնայ հասկցուիլ. զոր օրինակ.

Առաքինութիւնը մեզ երջանիկ կ՚ընէ,
Ապա սիրելի է։

Մէդէայի սա խօսքը Ովիդիոսին մէջ՝ հնարք է.

Պահպանել կարացի. կորուսանել եւս մարթացայց.

Հարցանես ցիս։

Ձեռնարկութիւնը սա է. Ան որ կրնայ պահել, կրնայ նաեւ կորսնցնել. արդ ես կրցայ քեզ պահել, ապա կրնամ կորսնցնել։

Հնարք է նաեւ սա տողը.

Որ եդ մահկանացու, ծն, մի՛ անմահ պահիցես ոխ։

Դուն որ մահկանացու ես, անմահ ոխ մի պահեր։ Ձեռնարկութիւնը սա է. Ով որ մահկանացու է՝ պէտք չէ որ անմահ ոխ պահէ. դուն մահկանացու ես, ապա պէտք չէ որ անմահ ոխ պահես։

113. Գրագիտական գրուածոց մէջ ձեռնարկութիւններն ինչպէս բացատրելու է։

Պէտք չէ որ ձեռնարկութիւնները գրագիտական գրուածոց մէջ հաւաքաբանութեան ցամաք կերպովը բացատրուին. հնարքի ձեւով ալ դուն ուրեք։ Պէտք է հաւաքաբանութիւնը ծպտել, գեղեցկացնել եւ ընդլայնել, այնպէս որ անոր զօրութիւնը զգացուի առանց ձեւը տեսնուելու։ Այսպէս պէտք է ըսել.

Սիրեա զառաքինութիւն, եթէ կամիս լինել երանելի։

Կամ աւելի ազդու կերպով։

Կամիս լինել երանելի, եւ չսիրիցես զառաքինութիւն։

Չկայ մտածութիւն մը որ չկարենայ Հաւաքաբանութեան վերածուիլ։ Զոր օրինակ․

Այն որ գիտէ սանձահարել ըզ կատաղեն ալեաց զայրոյթ,
Գիտէ եւս զանզգամաց զչարանիւթն արգելուլ դաւ․
Հընազանդ եմ ես նորին սուրբըն կամաց մեծարանօք,
Սիրելիդ Աբներ, չիք իմ բաց յԱստուծոյ ուստեք երկիւղ։

Նախ մերկացնենք այս իմաստն իր բոլոր զարդերէն, կը գտնենք հետեւեալ իմաստը․

Ես բոլոր յոյսս դրած եմ Աստուծոյ վրայ որ կարող է անզգամաց դաւաճանութիւններն արգելուլ․ ուստի եւ պէտք չէ որ անոնցմէ վախնամ։

Աս իմաստը հետեւեալ Հաւաքաբանութեան կը պատասխանէ։

Ան որ իր յոյսն Աստուծոյ վրայ դրած է՝ անզգամներէն չի վախնար․
Արդ, ես բոլոր յոյսս Աստուծոյ վրայ դրած եմ,
Ապա պէտք չէ որ անոնցմէ վախնամ։

Մտքին կորովը (ճշդութիւնը) կրթելու համար աս վարժութիւնը շատ օգտակար է։

114. Փաստորդն ինչ է։

Փաստորդը Հաւաքաբանութիւն մըն է ուր իւրաքանչիւր նախադրելոյ քով իր ապացոյցը դրըուած է։ Զոր օրինակ․

Պէտք է սիրել ան որ մեզ աւելի կատարեալ կընէ. (Մեծագոյն)․ ասիկա մեր սրտերուն մէջ քանդակուած ճշմարտութիւն մըն է, եւ ուղիղ բանն

ու մեր անձնական պատիւը մեզի սոր այնպէս յայտնի փաստերը կու տայ որ չենք կրնար ուրանալ (Ապացոյց)։

Արդ գեղեցիկ դպրութիւնք (բանաստեղծական գըրուածներ) մեզ աւելի կատարեալ կ'ընեն (Փոքրագոյն)․ սոր վրայ ծվ կրնայ տարակուսիլ։ Անոնք միտքը կը հարստացնեն, բարքը կ'ամոքեն, եւ մարդուս բոլոր անձը լաւ եւ քաղաքավար կ'երեւցնեն (Ապացոյց)։

Ապա պէտք է սիրել գեղեցիկ դպրութիւնները։

Բայց գրագիտական ճաշակը չախորժիր աս ձեւէն որ խօսքին տեսակ մը խստութիւն կու տայ։ Պէտք է աւելի հաճոյական ձեւի մը տակ ծածկել Հաւաքաբանութիւնը․ զոր օրինակ։

Ո՞վ կրնայ չսիրել գեղեցիկ դպրութիւնները։ Անոնք են որ միտքը կը հարստացնեն, բարքը կ'ամոքեն․ անոնք են որ մարդկութիւնը կ'ողորկեն եւ կատարեալ կ'ընեն։ Մեր անձին օգուտը եւ ուղիղ բանը բաւական են զանոնք մեզ պատուական երեւցնել եւ պարտաւորել զմեզ որ զանոնք մշակենք։

115․ Համաբարդութիւնն ինչ է։

Համաբարդութիւնը կը բաղկանայ շարք մը նախադասութիւններէ որոնց երկրորդը առաջնոյն ստորոգելին կը բացատրէ, երրորդը՝ երկրորդինը, եւ այնպէս առաջ կ'երթայ մինչեւ որ եզրակացութեան հասնինք որ վերջին նախադասութիւնն է․ զոր օրինակ հետեւեալը։

Ագահները բազմատենչ են․

Անոնք որ բազմատենչ են՝ բազմակարօտ են․

Անոնք որ բազմակարօտ են՝ թշուառ են.
Ուրեմն ագահները թշուառ են։

Համաբարդութեան համար ալ պէտք է իմանալ ինչ որ ձեռնարկութեանց նախընթաց կերպերուն համար ըսինք. այսինքն՝ Բանաստիրական գրութեան մէջ բարուոք ճաշակի դէմ է Հաւաքաբանութեան կերպը յայտնի ընել։ Կիկերոնի մէջ գրագիտական ոճով բացատրուած համաբարդութեան օրինակ մը ունինք։

Զոր օրինակ չէ մարթ զամենայն ազգս արմատեաց կամ ծառոց յամենայն անդս եւ յագարակս գտանել, նոյնպէս ոչ ամենայն ոճիրք յամենեցուն վարս ծնանին։ Ի քաղաքս ծնանին զեղխութիւնք, 'ի զեղխութենէ հարկ է ագահութեան գալ յարդիւնս, յագահութենէ առնու ծագումն յանդգնութիւն, եւ անտի գան 'ի ծնունդ ամենայն ոճիրք եւ անզգամութիւնք։ Այլ կեանք շինականք զոր դու վայրագս իմն եւ վայրենիս կոչես՝ վարդապետք են խնայութեան, փութոյ եւ արդարութեան վարժիչք։

116. Երկայրաբանութիւնն ի՞նչ է։

Երկայրաբանութիւնը կը բաղկանայ երկու հաւաքաբանութենէ որոնց մէկը կամ միւսը հարկ է ընդունիլ, եւ երկուքէն որն որ ընդունուի՝ մի եւ նոյն եզրակացութիւնը կ'ելլէ։ Զօրապետ մը ըսաւ գիշերապահ զինուորի մը որ թշնամւոյն տեղի տուած էր բանակին մէջ մտնելու.

Կամ քու տեղդ էիր եւ կամ չէիր.
Եթէ տեղդ էիր, մատնիչ ես.
Եթէ տեղդ չէիր, պարտազանց ես.
Ապա մահապարտ ես։

Այսպէս Սարգիս երկսայրաբանութեամբ կը ձեռնարկէ թէ պէտք չէ բամբասանաց դէմ զայրանալ եւ վրէժ խնդրել։

Եթէ որ բամբասեացն զքեզ սուտ ասաց զոր մինչ ամենայն ասացն, զինչ վնաս իցէ քեզ անտի, ո՛չ ապաքէն կուտիցի ամբաստանութիւնն 'ի նորա գլուխ որ բամբասեացն։ Ապա եթէ ճշմարիտ բամբասեցար, քո իսկ է վնասն եւ անձին քում մեղադիր լինիցիս զի պարտական եղեր դայթակղութեանն վասն որոյ բամբասեցարն։ Ապա յերկոսին եւս չէ պարտ քեզ ընբոստանալ եւ ո՛չ բամբասանացն փոխարէն բամբասել։

117. Ենթադրութիւնն ի՞նչ է։

Ենթադրութիւնը ճշմարիտ մեթոտին հակառակ ճամբան է. այսինքն՝ իրողութիւն մը առանց հետազօտելու, ստուգելու եւ կամ ապացուցանելու՝ անոր վրայ վճիռ տալ։

118. Ենթադրութիւնը միշտ ապօրինաւոր է։

Ճշմարտութեան գիւտը դիւրացնելու համար երբեմն ենթադրութիւն ընել հարկ կ'ըլլայ. եւ ան ատեն ենթադրութիւնը հաւանական կարծուած սկզբունք մըն է որ իր օրինաւորութիւնը հետեւանքներէն կը սպասէ։

119. Ենթադրութիւն ընել ե՞րբ ներելի է։

Երբ հետազօտել, ստուգել եւ ապացուցանել կարելի չէ, եւ շատ մը ապացուցեալ կամ ինքնին յայտնի իրողութեանց մեկնութիւն մը տալ հարկ է, զանոնք ենթադրեալ սկզբունքի մը կու տանք։ Աս դէպքին մէջ իրողութիւնները ստոյգ եւ հակառակելի են, իսկ ենթադրեալ սկզբունքը ստուգուելու կարօտ է։

Այս մեթոդը որ ենթադրական մեթոտ կը կոչուի խարխափելու կերպ մըն է ։ Նախ սկզբունք մը դընելով փորձ մը կ'ընենք, սա դիտաւորութեամբ որ այն սկզբունքը թողլով ուրիշ մը փորձենք, եթէ առաջ ենթադրուած սկզբունքը յուսացուած արդիւնքը չունենայ ։ Եթէ ենթադրեալ սկզբունքէ մը ծանօթ իրողութիւններն օրինաւորապէս մեկնուին, ան ատեն կը հետեւի որ ենթադրութիւնն այն իրողութեանց կարելի մեկնութիւնն է, ոչ թէ իրական մեկնութիւնը ։

**120. Մեթոտն ի՞նչ է ։**

Մեթոտ կը կոչուի ընդհանրապէս՝ ճշմարտութիւնը փնտռելու կամ ապացուցանելու մէջ մըտքին բռնած ճամբան ։

**121. Մեթոտին ընդհանուր կանոնները որո՞նք են ։**

1. Իրողութեան իրական ըլլալը ստուգել. այսինքն՝ ստուգել թէ իրողութիւնը իրօք կա՞յ թէ ոչ ։

2. Ամենեւին ենթադրութիւն չընել. այսինքն՝ իրողութեան վրայ դիտողութիւն եւ փորձ չըրած՝ մեր կողմանէ բան մը չվճռել ։

3. Սահմանել (74), եթէ առարկան որուն ճշմարտութիւնը փնտռել կամ ապացուցանել կ'ուզենք՝ պարզ է, այսինքն՝ այնպիսի գաղափար մըն է որ այլ եւ այլ խառն յատկութիւններ չունենալով մէկէն կը ճանչցուի ։

4. Լուծել կամ վերլուծել, եթէ առարկան որուն ճշմարտութիւնը փնտռել կամ ապացուցանել կ'ուզենք՝ պարզ չէ ։

**122. Քանի՞ տեսակ Մեթոտ կայ ։**

Սորվուելու իրաց նկատմամբ երկու տեսակ մե-

թօտ կայ. Առաջադասական եւ Փորձառական կամ Ենթադրական: Սորվուելու կամ գիտութեանց նիւթ եղող իրերէն ոմանք իրօք գոյութիւն ունեցող առարկաներ կամ երեւոյթներ են, որոնց բնութիւնը եւ օրէնքները ճանչնալ կ'ուզենք. այսպէս են բնական պատմութեան, հոգեբանութեան, բնական գիտութեան եւ ուրիշ ասոնց նման գիտութեանց նիւթերը: Ոմանք ալ ծանուցեալ կամ յայտնի սկզբունքներ են որոնց գործածութեան կերպը կ'ուզենք գիտնալ. այսպէս են երկրաչափութեան, գրահաշուի (ալճէպրայի), մեքենականութեան եւ ուրիշ ասոնց նման գիտութեանց նիւթերը: Ասոնց համեմատ մեթոտը նախ երկու կը բաժնուի. Առաջադասական կամ Ընծայական մեթոտ, եւ Փորձառական կամ Ենթադրական մեթոտ:

Առաջադասական մեթոտն այն գիտութեանց համար է որոնք յայտնի սկզբունքներ, աքսիոմներ ունին, ուստի եւ՝ ոչ թէ սկզբունք կը փնտռեն, այլ միայն իրենց արդէն ունեցած սկզբունքները գործածելով անոնցմէ ճշմարտութիւններ կը հետեւցընեն, ինչպէս են ճիշդ գիտութիւնները. աս պատճառաւ աս տեսակ գիտութիւններ ապացուցական կամ տէմօնսթրաթիֆական ալ կը կոչուին. ինչպէս ուսողութիւնը (մաթէմաթիքա):

Փորձառական կամ Ենթադրական մեթոտն այն գիտութեանց յատուկ է որոնք յայտնի սկզբունքներ չունենալով սկզբունք ճանչնալու կամ երեւան հանելու կը ջանան դիտողութեամբ եւ փորձով. ինչպէս են բնաբանական (ֆիզիքական) եւ բնական գիտութիւնները. աս պատճառաւ աս տեսակ գիտու-

թեանց Դէտուքտիֆեան գիտութիւն անունն ալ կը տրուի։

Փոզիտիւական մեթոտը կը ջանայ ճանչնալ իրականը, այսինքն ան որ իրողութիւն է, յուսալով որ անոր մէջ մակածութեամբ կը գտնէ նոյն իրողութիւնը վարող պատճառներուն սկզբունքը կամ օրէնքները։ Իսկ Եմփիրիքական մեթոտը չկրնալով իրողութեան կամ երեւոյթի մը սկզբունքը գտնել, զայն կ'ենթադրէ սա նպատակաւ՝ որ իրողութիւնը կամ երեւոյթը ենթադրեալ սկզբունքին հետ փորձելով ստուգէ, այսինքն՝ տեսնէ թէ ենթադրութիւնն իրողութիւնը կը մեկնէ՞ թէ ոչ. եթէ կը մեկնէ՝ ենթադրութիւնը կը պահէ բայց ոչ իբրեւ սկզբունք, այլ միշտ իբրեւ ենթադրութիւն. իսկ եթէ չի մեկներ, զայն կը թողու եւ ուրիշ ենթադրութիւն մը կ'ընդունի։

123. Ուրիշ ինչ մեթոտ կայ։

Մեր նպատակին նայելով ուրիշ երկու տեսակ մեթոտ ալ կայ որ են՝ Վերլուծական մեթոտ եւ Բաղադրական մեթոտ։

Եթէ մեր նպատակը ճշմարտութեան մը հասնիլ է՝ վերլուծական մեթոտը կը գործածենք. իսկ եթէ մեր նպատակը գիտութիւն մը սորվեցնել է, սովորաբար բաղադրականը կը գործածենք։

Բնական կամ դիտողութեան գիտութեանց մէջ վերլուծական մեթոտը որ լուծման կամ քննող մեթոտ ալ կը կոչուի՝ իրաց տարրերը կամ կազմիչ մասերն անոնց յարաբերութիւններէն եւ ամբողջէն առաջ, անհատներն ալ՝ իրենց դասերէն կամ սեռերէն առաջ կը քննէ եւ կ'ապացուցանէ. իսկ իմաստասիրական կամ ճիշդ գիտութեանց մէջ՝ նոյն

վերլուծական մեթոտը որ եւ իցէ առաջարկեալ նախադասութեան մը մէջ պարունակուած գաղափարները կը լուծէ, որպէս զի մինչեւ ընդհանուր սկզբունքին հասնի. ինչպէս գրահաշուի մէջ։

Բաղադրական մեթոտը որ վարդապետութեան մեթոտ ալ կը կոչուի, բնական գիտութեանց մէջ, վերլուծականին հակառակ, դասերը կամ սեռերն անհատներէն առաջ կը քննէ. իսկ ճիշդ գիտութեանց մէջ՝ ընդհանուր ճշմարտութիւններէ կամ աքսիոմներէ հետեւութիւններ կը հանէ, մինչեւ որ փնտռած մասնաւոր ճշմարտութիւնն իր լուծումը գտնէ։

Զոր օրինակ՝ բնական մարմնոց գաղափարը շատ ընդհանուր գաղափար մըն է եւ իր մէջ շատ այլ եւ այլ տեսակ իրեր կը պարունակէ. աս ընդհանուր գաղափարով ճանչցուած այլ եւ այլ տարբեր էակները զատելով կ՚ունենանք Շնչաւորի, Բուսոյ եւ Մետաղի մասնաւոր տեսակները. ասոնք ալ իրենց մէջ աւելի մասնաւոր տեսակներ կը պարունակեն. զոր օրինակ՝ Շնչաւորը կը պարունակէ Ողնայարաւորի, Անողնայարի եւ Թուլատարրի տեսակները. ասոնց ալ դարձեալ ամեն մէկն աւելի մասնաւոր տեսակներ կը պարունակէ. զոր օրինակ՝ Ողնայարաւորը կը պարունակէ՝ Կենդանածնի եւ Ձուածնի տեսակները. ասոնց ալ իւրաքանչիւրն աւելի մասնաւոր տեսակներ կը պարունակէ. զոր օրինակ՝ Կենդանածինը կը պարունակէ Երկձեռնեայ, Չորեքձեռնեայ եւ Չորքոտանեայ տեսակները. այսպէս կրնանք յառաջ երթալ իւրաքանչիւր ճիւղի մէջ, մինչեւ որ կը հասնինք վեր-

ջին տեսակէն որ աւելի մասնաւոր տեսակ մը իր մէջը չի պարունակեր։ Ահա բաղադրական մեթոդ, որուն մէջ բաղադրութիւն ըրինք, այսինքն՝ համեմատութեամբ պարզ գաղափարներու վրայ հետզհետէ նոր գաղափարներ աւելցնելով եկանք վերջին բաղադրեալ տեսակներու, այնպէս որ անկէ ետքն ալ անհատները կու գան։ Աս սորվեցնելու մեթոդ է. գիտութիւնները սովորաբար աս ճամբով կ՚աւանդուին։

Ասոր հակառակ, անհատ մարմիններու գաղափարը բաղադրեալ եւ չփոթ է։ Ասոնց այլ եւ այլ յատկութիւնները վերացնելով անոնց իրարու հետ ունեցած նմանութեանը կամ աննմանութեանը համեմատ տեսակներ կ՚ունենամ. տեսակներէն նոյն վերլուծական ճամբով կ՚ունենամ ուրիշ աւելի ընդհանուր տեսակներ կամ սեռեր, եւ այնպէս մինչեւ ընդհանուր կամ բարձրագոյն սեռին կը հասնիմ որ վերջին ընդհանուր եւ պարզ գաղափարն է։ Ահա վերլուծական մեթոդ, որուն մէջ լուծմամբ յառաջ գացինք. ասիկա քննելու կամ ճանչնալու մեթոդ է։ Մարդկային միտքը գիտութիւններն աս ճամբով կ՚ստանայ, եւ ամեն գիտութիւն աս ճամբով կազմուած է։

Ասիկա բնական կամ դիտողութեան գիտութեանց վերաբերեալ օրինակ մըն է. Նոյնը պէտք է իմանալ ճիշդ կամ ապացուցական գիտութեանց համար։

Վերլուծական եւ բաղադրական մեթոդը պէտք չէ վերլուծութեան եւ բաղադրութեան հետ շփոթել, թէպէտ աս մեթոդները վերլուծութեան ու բաղադրութեան վրայ կը կայանան։

124. Ճշմարտութիւնը փնտռելու եւ ապացուցանելու մէջ վերոյիշեալ գործողութիւնները, այսինքն՝ դիտողութիւնը, փորձը, ապացուցութիւնը (ընծայութիւնն ու մակածութիւնը) քանի՞ կերպով կրնանք գործածել։

Երկու կերպով. Ուղղակի եւ Անուղղակի, կամ՝ Անմիջապէս եւ Միջնորդաբար։

125. Յիշեալ գործողութիւնները Երբ ուղղակի կամ անմիջապէս կը գործածենք։

Երբ առարկան որուն ճշմարտութիւնը քննել եւ ապացուցանել կ'ուզենք՝ մեզի մօտ է եւ անմիջապէս մեր դիտողութեանն ու փորձառութեանը տակ կ'իյնայ։

126. Յիշեալ գործողութիւնները Երբ անուղղակի կամ միջնորդաբար կը գործածենք։

Երբ առարկան որուն ճշմարտութիւնը կը փնտռենք՝ տեղով կամ ժամանակաւ մեզմէ հեռու ըլլալով մեր դիտողութեանը եւ փորձառութեանը տակ չիյնար, ոչ ալ անոր նկատմամբ ընդհանուր եւ հարկաւոր ճշմարտութիւն մը կայ որմէ կարող ըլլանք առարկային ճշմարտութիւնը մակաբերութեամբ հետեւցունել։

127. Ասոնք ինչպիսի՞ առարկաներ կամ իրողութիւններ են։

Ասոնք պատմական իրողութիւններ են, այսինքն՝ այնպիսի իրողութիւններ զորանք ուրիշները մեզի կը պատմեն իբրեւ իրօք եղած։

128. Պատմական կամ ուրիշներուն մեզի պատմած իրողութիւններն իբրեւ ճշմարիտ ընդունելու հիմը ո՞րն է։

Մարդոց վկայութեան հեղինակութիւնն է, այսինքն՝ սա ճշմարտութիւնը որուն բանը կը վկայէ եւ փորձառութիւնն ալ ստուգած է թէ՝ Մարդոց պատմած իրողութիւնները որոնք մեր զգայութեանց տակ ինկած չեն՝ կրնան ճշմարիտ ըլլալ։

**129.** Մարդոց որ եւ իցէ վկայութիւնը հարկ է որ ընդունինք։

Ոչ, այլ այն վկայութիւնները միայն՝ որոնք վկաներուն եւ պատմուած դէպքերուն որպիսութեանը կողմանէ մեզի ստուգութեան երաշխաւորութիւն մը կու տան։

**130.** Պատմական իրողութիւն մը իբրեւ ճշմարիտ ընդունելու համար վկաներուն կողմանէ ինչ կը պահանջուի։

Վկաներուն կողմանէ կը պահանջուի ճշմարտախօսութիւն եւ ձեռնհասութիւն։ Եթէ վկայութիւնը զգայութեանց տակ ինկող դէպքի կամ երեւոյթի մը վրայ է, զոր օրինակ թէ Այս ինչ երկիրը ջուր կոխեց, կամ այն ինչ գետը կամ ծովը ցամաքեցաւ, վկային կողմանէ ճշմարտախօսութիւն միայն կը պահանջուի եւ բաւական է։ Իսկ եթէ վկայութիւնը դատողութեան մը վրայ է որուն համար մասնաւոր գիտութիւն կամ հմտութիւն կը պահանջուի, զոր օրինակ թէ Այս ինչ մարդը որ այս ինչ հիւանդութիւնն ունէր՝ այս ինչ կերպով կամ դարմանով առողջութիւն գտաւ, վկային կողմանէ ճշմարտախօսութենէ զատ՝ նաեւ ձեռնհասութիւն կը պահանջուի. այսինքն՝ մարդուն այն ինչ հիւանդութիւնն ունենալը եւ բժշկութիւնն այն ինչ դարմանէն եւ ոչ ուրիշ միջոցով մը ըլլալը ճանչնալու եւ դատելու ձեռնհասութիւն։

131. Ճշմարտախօս ըսելով ինչ կ՚իմացուի։

Ան որ բնական միամտամբ կամ մտապարծութեան եւ անձնական շահու համար խաբելու դիտաւորութիւն չունի, ինք ալ խաբուած չէ։

132. Աս մտօք վկաներուն ճշմարտախօսութիւնը ինչպէս կրնանք դատել։

Նախ՝ երբ վկայողները հասակաւ, բնաւորութեամբ եւ շահու տարբեր անձինք են. մի միայն վըկայի մը շատ դժուարաւ հաւատք կրնայ ընծայուիլ, մանաւանդ թէ իրաւանց մէջ առակ է թէ Մէկ վկան վկայ չէ։ Երկրորդ՝ երբ վկաներն ականատես կամ ականջալուր են։

133. Դէպքերուն կողմանէ ինչ կը պահանջուի։

Կը պահանջուի որ նախ՝ դէպքերն առասպելական չըլլան. զոր օրինակ՝ թեւաւոր ձի, երեքգլխեան օձ, կէսը մարդ կէսն անասուն էակներ՝ առասպելական են։ Երկրորդ՝ հակասութիւն մը չպարունակեն. զոր օրինակ՝ հակասական կ՚ըլլայ եթէ մէկուն համար ըսուի թէ այն ինչ տեղն էր, մինչ ստոյգ է որ ան նոյն ժամանակին ուրիշ տեղ էր։ Երրորդ՝ անտեղի չըլլայ, կամ իրերու յայտնի տգիտութիւն չյանդիմանուի. այսպէս է գործ մը իր պատճառէն առաջ ենթադրելը, կամ երեւոյթ մը իր օրէնքէն առաջ. զոր օրինակ՝ անհնար է թէ լուսինը որ երկրիս արբանեակն է՝ երկրէն առաջ եղած ըլլայ, ինչպէս աշխարհագործութեան հին առասպելական պատմութեանց մէջ կ՚ենթադրուի։

134. Գիտնական սկզբանց, վարդապետութեանց կամ դրութեանց մասին վկայից բազմութիւնը եւ հնութիւնը կրնա՞ն բացարձակ արժէք ունենալ։

Ոչ. զոր օրինակ՝ արեւին երկրիս բոլորտիքը, կամ երկրիս արեւին բոլորտիքը դառնալուն նկատմամբ՝ վկայից հնութիւնը կամ բազմութիւնը չէր կրնար արժէք ունենալ։ Արդարեւ տեսնուած են աստեղագիտութեան, բնական գիտութեան եւ ուրիշ գիտութեանց մէջ սխալ կարծիքներ որոնք գրեթէ առհասարակ ընդունուած էին ժամանակաւ։ Այսպիսի դիպաց նկատմամբ ձեռնհաս կամ իրին տեղեակ մարդոց վկայութիւնը մեծ կարեւորութիւն ունի։

135. Անցեալ դէպքերը քանի կերպով կրնան մեզի հասնիլ։

Երեք կերպով կամ ճամբով. 1. Աւանդութեամբ կամ ի լրոյ. 2. Յիշատակարաններով եւ 3. Պատմագրութեամբ։

136. Աւանդութիւնն ինչ է։

Աւանդութիւնը բերնուց պատմութիւն է որ կուգայ 'ի լրոյ, եւ վաղեմի ազգաց առհասարակ, իսկ քաղաքակիրթ ազգաց մէջ ռամիկ մասին՝ տեղեկութիւններ եւ դէպքեր յետնոց իմացնելու յատուկ կերպն է։ Աւանդութիւնը կրնայ ճշմարիտ ըլլալ, բայց ընդհանրապէս մութ է, եւ բերնէ բերան անցնելուն համար կրնայ, ժամանակին տեւողութեանը եւ ազգին որուն աւանդութիւնն է՝ մտաւոր եւ բարոյական որպիսութեանը նայելով, քիչ շատ առասպելախառն կամ այլայլած ըլլալ։

137. Աւանդութիւնը ճշմարտելու կանոնը ո՞րն է։

Պէտք է դարէ դար ետ երթալով աւանդութեան ծագմանն ըստ կարի մօտենալ, եւ աւանդութիւնը պարզել բոլոր մթութիւններէն, կեղծիքներէն կամ

յաւելուածներէն որոնք կրնան անոր մէջ խառ-
նուած ըլլալ։

138. Յիշատակարանն ինչ է։

Յիշատակարանը տեսակ մը նիւթական պատմու-
թիւն է. զոր օրինակ՝ շինուած, կոթող, քանդակ,
արձանագիր, մանաւանդ պատկերագիր (մեդալ) եւ
դրամ, ամբողջ կամ կիսաւեր։ Ասոնց վկայութիւնը
առաւելագոյն է, թէպէտ ասոնք ալ կրնան այլայլեալ,
կամ երբեմն նաեւ խարդախեալ կամ սուտ ըլլալ։

139. Յիշատակարան մը ճշմարտելու կանոնը ո՞րն է։

Պէտք է քննել թէ յիշատակարանն այն ինչ դա-
րուն կամ ժամանակին որուն կ'ընծայուի՝ ճար-
տարապետութեանը կամ արուեստին յատկութիւն-
ները ունի, թէ անոր նմանութիւնը միայն է եւ յետ-
նագոյն ժամանակի գործ. եւ թէ՝ ժամանակին կամ
երկրին կրթութեանը նայելով այնպիսի արուեստ
եւ ճարտարութիւն եղած է եւ կրնա՞ր ըլլալ. աս
ամէնը կրնան ստուգուիլ նոյն երկրին կամ դրացի
երկիրներուն ժամանակակից պատմութիւններէն։

140. Պատմագրութիւնն ինչ է։

Պատմագրի մը գրուածն է։ Պատմագրութիւնը
կամ գրաւոր պատմութիւնը միայն կրնայ մեզի ան-
ցեալ դիպաց վրայ բուն տեղեկութիւններ տալ։

141. Գրաւոր պատմութիւն մը ճշմարտելու կա-
նոնը ո՞րն է։

Գրաւոր պատմութիւն մը իբրեւ ճշմարիտ ըն-
դունելէ առաջ՝ պէտք է քննել 1. անոր Վաւերակա-
նութիւնը, եւ 2. պատմագրին Ընդունակութիւնը, Ճշ-
մարտախօսութիւնն ու Անկողմնակալութիւնը։

142. Վաւերականութիւնն ինչ է։

Վաւերականութիւնը գրքին կամ ձեռագրին բուն այն հեղինակին ըլլալն է որուն գործը կ՚ընծայուի֊տուով նախ վկայող անձին ով ըլլալը կ՚որոշուի։

143. Արդեօք ինչպէս կը ստուգուի։

Նախ՝ ներքնապէս․ այսինքն՝ քննելով թէ գիրքին ոճը հեղինակինն է․ կամ խորհրդածութիւնները, դատողութիւնները, գործին կազմութիւնն ու ընթացքը անոր հանճարոյն եւ նպատակին յարմար են։ Ասոնք կը ճանչցուին հեղինակին ուրիշ գործերէն, եթէ ուրիշ գրուածներ ունի, եւ կամ ժամանակակից գրուածներու ոճէն։ Երբ գրուածքին մէջ բառ կամ բացատրութիւն կամ սովորութեանց եւ դէպքերու յիշատակութիւն կայ որոնց հեղինակին ժամանակէն ետքը մուտ գտած ըլլալն յայտնի է, այնպիսի գրուած մը վաւերական կամ հարազատ չէ։ Նոյնպէս պէտք է դիտել որ գրուածքին մէջ յիշատակութիւն կա՞յ երեւելի ժամանակակից դիպաց եւ անձանց վրայ որոնց յիշուիլը բնական էր։ Երկրորդ՝ արտաքնապէս․ այսինքն՝ թէ ժամանակակից կամ յետնագոյն հեղինակներ, մանաւանդ անոնք որ մի եւ նոյն նիւթին վրայ գրած են՝ կը յիշե՞ն նոյն հեղինակը։

144. Հեղինակին ընդունակութիւնը, ճշմարտախօսութիւնն ու անխարդախութիւնը ո՞րն է։

Հեղինակին ընդունակութիւնը՝ անոր ականատես, ականջալուր միանգամայն ձեռնհաս, այսինքն՝ իրողութիւնը ճանչնալու եւ անոր վրայ դատողութիւն ընելու յարմարութիւնն է․ ինչպէս Թուկիդիդէս եւ Կեսար, որոնց առաջինը Պեղոպոնէսեան պատերազմին, երկրորդը՝ Գաղատացւոց պատերազմին միջա-

մուխ եւ գործին — 59 — [illegible]ակլու՝ եւ ապացու-կը ճանչցուի, երբ հեղինակը խաբելու [illegible] կը գործէր, եւ իւր շահուն դէմ անգամ կը խօսի։ Անխարդախութիւնը, այսինքն իրողութիւնները չայլայլելը, կ'իմացուի, երբ հեղինակին խօսքերը ուրիշ ժամանակակից եւ ձեռնհաս մարդոց վկայութեանը համաձայն են։

Վկայութիւններ եւ Պատմական իրողութիւններ ստուգելու համար մինչեւ հիմա ըսուած կանոններէն զատ ուրիշ դիտողութիւններ ալ կրնան ըլլալ, եւ տրուած կանոններն ալ բացառութիւն կրնան ունենալ. սակայն ուղիղ բանը կրնայ թելադրել, ուղիղ բանը՝ որ աս նիւթիս մէջ մանաւանդ գլխաւոր դատաւորն է, ենթադրելով որ դատողն արդարակորով եւ լուսաւորեալ անձ է։

145. Բացայայտութիւնն ի՞նչ է։

Բացայայտութիւնն այն յատկութիւնը, այն լոյսն է զոր ինքնին յայտնի գաղափար մը, առաջին ճշմարտութիւն մը, ունի. կամ՝ որ խնդրոյ մը ճանչցուելէն կամ ապացուցուելէն ետքը մտքին առջեւ այն գաղափարէն կամ իրեն վրայով կը ծագի։

146. Ուստի ըստ այսմ քանի՞ տեսակ բացայայտութիւն կայ։

Ըստ այսմ երկու տեսակ բացայայտութիւն կայ, անմիջական կամ դէմյանդիման (ինքնադիմի) որ քննութենէ կամ ապացուցութենէ առաջ կայ, եւ ինքնին յայտնի եղող առաջին գաղափարաց եւ ճշմարտութեանց (աքսիոմներու) յատուկ է. երկրորդ՝ միջնորդական կամ ապացուցական բացայայտութիւն որ յայտնի սկզբունքներու միջոցաւ ապացուցութենէ

կը ցնծանի՝ տակաւ առկախ՝ մինչեւ որ, իր լուսաւորութեան գագաթը հասնելով, իմացականութիւնը կը յափշտակէ եւ նոյն իսկ առաջին ճշմարտութեանց տուած ստուգութեանը քիչ շատ նման ստուգութիւն մը կու տայ։

147. Ստուգութիւնն ի՞նչ է.

Գաղափարի կամ ծանօթութեան մը բացայայտութենէն յառաջ եկած ապահովութիւնն է զոր միտքը կ'ունենայ թէ ճշմարտութիւնը ստացած է։

148. Ստուգութիւնը քանի՞ տեսակ է։

Նախ ստուգութիւնը բացայայտութեան աղէս իր ծագումը նայելով՝ կրկին է, անմիջական կամ դէմյան-դիման ստուգութիւն՝ որ առաջին ճշմարտութիւններունն է. եւ միջնորդական կամ ապացուցական ստուգութիւն՝ որ ապացուցութեամբ կը ստացուի։

Երկրորդ՝ առարկաներու կողմանէ նայելով ստուգութիւնը երեք է, Բնական (Ֆիզիքական), Բարոյական եւ Բնազանցական։

Բնականը Ֆիզիքական իրաց եւ երեւոյթից կը վերաբերի, եւ զգայարանաց վկայութեանը վրայ կը կայանայ. Բարոյականը՝ բարոյական օրինաց, եւ, պատմական դէպքերու մէջ, մանաւանդ մարդոց վկայութեանը վրայ. Բնազանցականը կը կայանայ առաջին ճշմարտութեանց եւ անոնց ընծայութիւններուն, այսինքն անոնցմէ հանուած հետեւութեանց վրայ, ինչպէս են ուսողութեան աքսիոմներն ու թէորեմները, տրամաբանական ապացուցութիւնները, բարոյականին հիմ եղող ճշմարտութիւններ եւայլն։

149. Մեթոտին վերոյիշեալ այլեւայլ կերպերը.

կամ ճշմարտութիւնը հաստատելու եւ ապացուցանելու այլեւայլ գործողութիւններն մեր կը գործածուին։

Գիտութեանց առարկայ եղող գաղափարներ, երեւոյթներ եւ իրողութիւններ ստուգելու համար։

150. Գիտութիւններն ի՞նչ են։

Գիտութիւնները ճշմարտութիւններ հաստատելու եւ ապացուցանելու դրութիւններ են, որոնք իրենց յատուկ եղող գաղափարներ, երեւոյթներ եւ իրողութիւններ մտքին այլեւայլ գործողութիւններուն միջոցաւ հաստատելով եւ ապացուցանելով կը ստուգեն, եւ այսպէս ստուգեալ գաղափար, երեւոյթ կամ իրողութիւն մը նոյն գիտութեան մէկ ճշմարտութիւնը կ'ըլլայ։

Զոր օրինակ. Հոգեբանութիւնը որ գիտութիւն մըն է՝ հոգւոյն կամ ես-ին բնութեանը, կարողութիւններուն եւ գործողութիւններուն գաղափարները, երեւոյթները կամ իրողութիւնները հաստատութեամբ կամ ապացուցութեամբ կը ստուգէ։ Նոյն բանը կ'ընէ Ուսողութիւնը մարմնոց քանի մը յատկութիւններուն, զոր օրինակ, քանակութեան եւ տարածութեան նկատմամբ. Բնական գիտութիւնը՝ բնական երեւոյթներու, զոր օրինակ, շարժման, լուսոյ, ելեքտրականութեան. Բնական պատմութիւնը՝ բնական մարմիններու. Բնազանցական գիտութիւնը՝ այլեւայլ հարկաւոր գաղափարներու, զոր օրինակ՝ անսահմանի, բացարձակի. Բարոյական գիտութիւնը՝ բարոյական գաղափարներու, ինչպէս արդարութեան, իրաւանց նկատմամբ, այլովքն հանդերձ։

151. Գիտութիւնները քանի՞ կարգ կը բաժնուին։

Երեք. Ճիշդ գիտութիւններ, Բնական գիտութիւններ, եւ Բարոյական գիտութիւններ։

152. Ճիշդ գիտութիւնները որո՞նք են։

Ճիշդ գիտութիւններ կը կոչուին ուսողութեան գիտութիւնները, ինչպէս գրահաշիւը, երկրաչափութիւնը եւայլք։

Ասոնք առաջին ճշմարտութիւն կոչուած (40) սկզբունքներու վրայ կը կայանան. աս ճշմարտութիւններէն ապացուցութեամբ կը հանուին հետեւութիւններ։

153. Աս գիտութեանց մեթոտը ո՞րն է։

Ճիշդ գիտութեանց մեթոտն ապացուցական մեթոտն է։ Նախ՝ աքսիոմներ կը դրուին. երկրորդ՝ անոնց բառերը կը սահմանուին որպէս զի երկդիմութիւն տեղի չունենայ. երրորդ՝ ամեն եզրակացութեան փաստը կը տրուի ապացուցական կերպով ընծայութենէ, այսինքն՝ սկզբունքներէ առ հետեւութիւն։ (Տես Աքսիոմ, Սահման, Ընծայութիւն եւ Ապացուցութիւն)։

154. Բնական գիտութիւնները որո՞նք են։

Բնական կը կոչուին այն գիտութիւնները որոնց առարկան նիւթական աշխարհն է, եւ կը խօսին բնական մարմնոց վրայ, ինչպէս Բնական պատմութիւնը. անոնց յատկութիւններուն ու բնական երեւոյթներու վրայ, ինչպէս Քիմիան որ մարմնոց ներքին յատկութիւններուն վրայ, եւ Բնագիտութիւնը որ մարմնոց արտաքին յատկութեանցը եւ բնական երեւոյթներու վրայ կը խօսի։

155. Աս գիտութեանց մեթոտը ո՞րն է։

Բնական գիտութեանց մեթոտը փորձառական եւ մակածական մեթոտն է։ Ուստի նախ՝ ենթադրութենէ բոլորովին հեռի ըլլալով, պէտք է իրողութիւններուն գոյութիւնը կամ իրօք ըլլալը դիտողութեամբ ստուգել․ երկրորդ՝ բուն իրողութիւնները քննել փորձելով․ երրորդ՝ ստուգեալ դէպքերէն մակածութեամբ եզրակացութեանց գալ։ Աս գիտութեանց մէջ եզրակացութիւններն ապացուցական չեն, այլ մակածական․ ուստի թէպէտ շատ անգամ հետեւութիւններն ապացուցական եզրակացութեանց չափ ստոյգ կրնան ըլլալ, բայց կրնան նաեւ սխալ ըլլալ․ քանզի մակածութեամբ եղած իմաստասիրութեան մէջ կրնան սկզբունքները ճշմարիտ ըլլալ, եւ հետեւութիւնները սուտ․ ուր ընծայութեամբ եղած իմաստասիրութեան մէջ ըսկզբունքները ճշմարիտ ըլլալէն ետքը՝ հետեւութիւնն ՚ի հարկէ ճշմարիտ կ՚ըլլայ։ (Տես Դիտողութիւն, Փորձ, Մակածութիւն)։

156․ Բարոյական գիտութիւնները որո՞նք են։

Բարոյական կը կոչուին նախ այն գիտութիւնները որոց նպատակը կամ սկզբունքն է ճանչնալ մարդկային հոգին, եւ բարոյական աշխարհիս ճշմարտութիւններն ու օրէնքները․ ինչպէս են Հոգեբանութիւնը, Բարոյականը, Քաղաքագիտութիւնը, Իրաւագիտութիւնը, եւայլք։

Երկրորդ՝ յանձուկ միտս բարոյական կը կոչուին այն գիտութիւնները որոց առարկան է ճանչնալ այնպիսի իրողութիւններ որոնք ոչ բնական գիտութեանց առարկաներուն պէս արտաքին զգայութեանց, ոչ ալ ուսողութեան եւ անազանցական գի-

թեանց տարբերութեան մէջ բանին տակ կ՚իյնան, քանզի ժամանակով եւ տեղեաւ մեզմէ հեռու են, այսպէս են պատմութիւնը, աշխարհագրութիւնը, եւայլն։

157․ Բարոյական գիտութեանց մեթոտը ո՞րն է։

Առաջին նշանակութեամբ բարոյական գիտութեանց մեթոտը փորձառական կամ մակածականն է։

Եթէ մեր հոգին ճանչնալ կ՚ուզենք՝ անոր ներքին իրողութիւնները կամ երեւոյթները, անոր գործողութիւնները եւ կարողութիւնները դիտելու ենք, ներքին զգայութեան կամ գիտակցութեան միջոցաւ։ Եթէ բարոյական աշխարհիս, այսինքն՝ մարդուս իբրեւ բարոյական եւ ընկերական էակի, ճշմարտութիւններն ու օրէնքները կ՚ուզենք ճանչնալ, փորձառական ճամբան ձեռք առնելու ենք՝ հանդիտութեան եւ մակածութեան միջոցաւ։ (Տես Գիտակցութիւն, Դիտողութիւն, Փորձ, Հանդիտութիւն եւ Մակածութիւն)։

Երկրորդ նշանակութեամբ բարոյական (պատմական) գիտութեանց մեթոտը մարդոց վկայութիւնն է։ (Տես Մարդոց վկայութիւն, Աւանդութիւն, Յիշատակարան, Պատմագրութիւն)։

158․ Անտեղութենէ ապացուցանելն ի՞նչ է․

Անտեղութենէ կ՚ապացուցանենք, որ Անուղղակի ապացուցանել ալ կ՚ըսուի, երբ սուտ սկզբունք մը ճշմարիտ ենթադրելով անկէ կը հանենք հետեւութիւն մը որ հարկաւ սուտ կամ անտեղի պիտի ըլլայ․ ասով սկզբունքին սուտութիւնը եւ անոր հակառակին ճշմարտութիւնը կը ցուցուի։ Զոր օրինակ՝ առաջին պատճառի մը գոյութիւնը ցուցնելու հա-

մար՝ կ'ըսեմ. Եթէ ամեն էակ դիպուածոյ (ներընդունական կամ արարած) է, ապա կար ժամանակ երբ բան մը չկար, հետեւաբար ոչինչն ըրաւ ամեն բան։ Այդ որովհետեւ աս անտեղի է, ինքնին կը հետեւի որ ամեն բան արարած չէ, այլ կայ էութիւն մը որ ինքնագոյ է եւ ուրիշ էութեանց առաջին պատճառը։

Կան ապացուցական գիտութիւններ որոնց ճըշմարտութիւններն այնպէս յայտնի են որ հակառակութեանց տեղի չեն տար. բայց բարոյական գիտութեանց մէջ սկզբունքները շատ անգամ յարձակում կը կրեն եւ չեն ընդունուիր. ուստի եւ մանաւանդ աս գիտութեանց մէջ հարկ կ'ըլլայ շատ անգամ անուղղակի ձեռնարկել կամ պատճառաբանել, ինչպէս որ ընել սովոր էր Սոկրատ իր ժամանակին իմաստակներուն դէմ։

159. Իմաստակութիւնն ի՞նչ է։

Իմաստակութիւն կամ խաբէութիւն կը կոչուին այնպիսի առ երեւոյթ պատճառաբանութիւններ որոնց ստութիւնը կը հասկցուի, բայց լսողը կրնայ չուարիլ եւ կարող չըլլալ խաբէութիւնը խայտառակել։

160. Քանի՞ գլխաւոր տեսակ իմաստակութիւն կայ.

Ուժ. 1. Տէիբօ–Բէ–Ն Նէ–Բոյ։ Ասով իմաստակը հակառակորդին չուրացածը կ'ապացուցանէ, կամ խընդրէն դուրս կ'ելլէ։ Այսպէս է սովորական վիճաբանութեանց մեծ մասը. շատ անգամ խնդրոյն վիճակն աղէկ որոշուած չըլլալուն համար՝ առանց իրար հասկնալու տաքութեամբ կը վիճուի։ Ուստի պէտք է նախ խնդիրը որոշել կամ սահմանել. եւ

եթէ համառօտութիւնը խնդրէն հեռանայ, պէտք է պահանջել անկէ որ բուն խնդրոյն գայ։

2. Երկդիմութիւն խօսքի։ Ասիկա հաւաքական մտքէ՝ բաժանականի, կամ բաժանականէն հաւաքականի անցնել է։ Զոր օրինակ. եթէ մէկը ՚ի հարկէ շարժող կամ կեցողին ազատ գործող չըլլալէն հետեւցնել ուզէ թէ մարդս ալ որ ՚ի հարկէ կը շարժի կամ կը կենայ՝ ազատ գործող չէ, ՚ի հարկէ շարժող կամ կեցողը երկդիմի մտօք առած կ՚ըլլայ, այսինքն՝ նախ բաժանաբար, եւ ապա հաւաքաբար։ Այս բացատրութիւնը բաժանաբար առնուելով կը նշանակէ ան՝ որուն կամ շարժիլ կամ կենալ հարկ, այսինքն՝ հարկաւորութիւն մըն է. հաւաքաբար առնուելով կը նշանակէ ան՝ որուն առանց հարկ մը ըլլալու շարժիլ կամ կենալ, հարկաւ երքուքին մէկը պիտի ընէ, երրորդ վիճակ մը չկայ։

3. Կրկնումն ոճոյն։ Աս խաբէութեան մէջ ապացոյցը նոյն իսկ խնդիրն է ուրիշ բառերով յառաջ բերուած. զոր օրինակ՝ Երեւակայական հիւանդ կոչուած կատակերգութեան մէջ Մոլիէր հարցնել կու տայ թէ ինչու համար ափիոնը քուն կը բերէ, պատասխան կը տրուի թէ վասն զի քնածու զօրութիւն ունի։ Ասիկա նոյնը նոյնով ցուցունել է. քուն բերել եւ քնածու զօրութիւն ունենալ մի եւ նոյն բան են. մի եւ նոյն խօսքն ինք իրեն փաստ չի կրնար ըլլալ։

Սկզբան կրկնումը Ցուի շրջան կը կոչուի, երբ խնդրոյ մը իբր ապացոյց բերուած փաստին՝ նոյն իսկ խնդիրն ապացոյց կու տանք. զոր օրինակ. եթէ մէկը գործ չունենալուն պատճառ բերէ դրա-

մագլուխ չունենալը, դրամագլուխ չունենալուն ալ՝ գործ չունենալը։

4. Յաջորդութիւն պատճառ է։ Այս տեսակ իմաստակութեան մէջ ան որ պատճառ չէ՝ իբրեւ պատճառ կ՚առնուի։ Բան մը կը պատահի որուն պատճառը չենք գիտեր. — Ինչ կ՚ընենք. — փոխանակ մեր տգիտութիւնը խոստովանելու՝ նախընթաց կամ զուգընթաց դէպք մը անոր իբր պատճառ կու տանք։ Այս սխալ իմաստակութեամբ հիները քանի մը բնական երեւոյթներ ձախողութեանց կամ յաջողութեանց գուշակ կը համարէին. զոր օրինակ՝ գիսաւորները ժանտախտի, սովի եւ ուրիշ չարեաց։

5. Անկատար Թուարկութիւն։ Այս իմաստակութիւնը յայնժամ կը կայանայ որ անկատար բաժանումէ մը ընդհանուր հետեւութիւն մը կը հանուի. զոր օրինակ եթէ ըսենք՝ Գաղղիացիք, Անգղիացիք, Իտալացիք, Գերմանացիք սպիտակ են, ապա բոլոր մարդիկ սպիտակ են, մարդկային ազգին քանի մը մասէն բոլորին վրայ հետեւութիւն ըրած կ՚ըլլանք։

6. Պարագայականէ Բացարձակ Հետեւութիւն։ Զոր օրինակ. Բժիշկները սխալմունք կ՚ընեն, ապա բժշկութիւնը խոտելի է. կամ՝ Մարդիկ գիտութիւններով եւ արուեստներով կը զեղծանին, ապա գիտութիւններն ու արուեստները մերժելի են։

7. Յարաբերականէ Բացարձակ Հետեւութիւն։ Զոր օրինակ. Մարդկային կերպարանքն ամենէն գեղեցիկն է, ապա Աստուած մարդկային կերպարանք ունի. ինչպէս կ՚ըսէին Եպիկուրեանք։ Այս եւ նախընթաց խաբէութեան մէջ եզրակացութիւնը նախադրեալներէն ընդարձակ է։

8. Բաժանեալ մտքէ բաղադրեալ մտքի, կամ բաղադրեալէն բաժանելոյ հետեւութիւն։

Բաղադրեալ միտքը բառի մը կատարեալ եւ ճիշդ նշանակութիւնն է․ բաժանեալ միտքը բառին պատահական եւ սեղմեալ նշանակութիւնն է։

Երբ Աւետարանը կ'ըսէ․ Կոյրք տեսանեն, կաղք գնան, խուլք լսեն, եւայլն․ կոյր, կաղ, խուլ ըսելով պէտք է հասկնալ բաժանեալ մտօք, այսինքն անոնք որ առաջ այնպէս էին․ ուստի կոյրը, կաղը, խուլը բաղադրեալ մտօք առնուլը, այսինքն՝ կոյրը կոյր մնալով կը տեսնէր, կաղը կաղ մնալով կը քալէր ըսելն իմաստակութիւն է։

161. Իմաստակութիւնն ուստի՞ յառաջ կու գայ։

Ամեն իմաստակութիւն կամ սխալ իմաստաբանել անկէ յառաջ կու գայ որ եզրակացութիւնը նախադրեալներուն մէջ չի պարունակուիր․ եւ սխալը յայնժամ կը կայանայ որ միջին եզրը նախադրելոց մէջ միեւնոյն նշանակութիւնը չունենար, այսինքն՝ հոմ կ'ըլլայ, եւ կամ եզրակացութեան մէջ միւս երկու եզրներուն մէկն աւելի ընդարձակ մտօք առնուած կ'ըլլայ քան թէ նախադրելոց մէջ։

162. Մարդիկ իրենց միտքն ի՞նչպէս կը յայտնեն։

Արտաքին նշաններով, որոնք երկու տեսակ են․ Բնական եւ Արուեստական։

163. Բնական նշանները որո՞նք են։

Բնական կ'ըսուին մարդուս միտքն յայտնող այն նշանները որոնք բնածին են եւ գրեթէ բոլոր մարդոց վրայ միեւնոյն։

164. Ասոնք քանի՞ տեսակ են։

Երեք․ 1. Դիմաց նշաններ, այսինքն՝ երեսին այլ

եւ այլ շարժումները որոնք այլ եւ այլ իմացական շարժմանց հետ գրեթէ կը զուգընթանան. այսպէս են՝ աչաց, յօնաց, ընչաց պէսպէս ձկտումները, որովք ուրախութիւն, սէր, գութ, զզուանք, բարկութիւն, տհաճութիւն, ցաւ, եւ ուրիշ ասոնց նման զգացում կամ կիրք կը յայտնենք։

2. Անդամոց նշաններ, այսինքն՝ շարժուածք, որով գլխոյ, ձեռաց, մարմնոյ այլ եւ այլ շարժուածները կամ դիրքը կը հասկցուին, եւ որովք նոյնպէս հոգւոյն այլ եւ այլ զգածումները կը յայտնուին։

3. Անյօդաւոր հնչմունք, այսինքն՝ այն գոչիւնները զոր այլ եւ այլ զգացումներ, ինչպէս՝ ցաւ, զարմանք, բարկութիւն եւայլք, մարդուս հանել կու տան. ինչպէս՝ ահ, վայ, այ, այլովքն հանդերձ, որոնք ձայնարկութիւն կը կոչուին, եւ ամբողջ իմաստներ յայտնող հնչումներ են։

165. Արուեստական նշանները որոնք են։

Բնական նշաններուն սակաւութիւնն ու անբաւականութիւնը հարկադրած են զմարդիկ արուեստական նշաններ հնարելու, այսինքն՝ այնպիսի նշաններ որոնք ոչ թէ մարդուս ինքնագլուխ եւ բնածին են, այլ կամայական, ուստի եւ այլ եւ այլ ժամանակաց եւ տեղեաց նայելով՝ զանազան են։

166. Աս երկու տեսակ նշաններուն ընդհանուր անուամբ ինչ կ'ըսուի։

Լեզու կ'ըսուի. ուստի եւ երկու տեսակ լեզու կայ. Բնական լեզու որ բնական նշաններուն դրութեանը կ'ըսուի, եւ Արուեստական լեզու որ արուեստական նշաններուն անունն է։

167. Արուեստական լեզուին քանի տեսակ է։

երկու․ Խօսուն լեզու եւ Գրաւոր լեզու։

168․ Խօսուն լեզուին նշանները որո՞նք են։

Խօսուն լեզուին նշաններն են՝ խուլ եւ համրերց գործածած արուեստական նշանները որոնք անցեալ դարուն վերջերը Էբէ անուն քահանայ մը հնարեց, Հին հեռագրական նշաններ, եւ մանաւանդ՝ Բարբառը։

169․ Բարբառն ինչ է։

Բարբառը՝ յօդաւոր հնչմանց բաղադրութիւններէն կը կազմուի։ Յօդաւոր հնչում ըսելով կ'իմացուին ձայնաւորներէ եւ բաղաձայններէ կազմուած որոշ եւ յստակ հնչումներ, որոնք նիւթական լեզուին, շրթանց, ատամանց եւ կոկորդին այլ եւ այլ շարժումներովը կամ խաղերովը կը հանուին։ Իւրաքանչիւր յօդաւոր հնչում ձայն է․ եւ վանկերու բաղադրութիւնները, երբեմն նաեւ պարզ յօդաւոր հնչումները (վանկեր) բառ կ'ըսուին։ Մարդիկ յօդաւոր հնչումները եւ անոնց բաղադրութիւններն այսինքն՝ բառեր, ըստ հաճոյս եւ միաբան հաւանութեամբ իրենց գաղափարներուն նշան ըրած ըլլալով ամեն անգամ որ բառ մը կը հնչեն, անոր սեպհականուած գաղափարը կը հասկնան։ Մարդիկ այս նշանները բնական եւ արուեստական կերպով մէկտեղ բերելով կը կազմեն խօսքեր որոնք խորհրդոց նշաններ են։

170․ Գրաւոր լեզուն ինչ է։

Գրաւոր լեզուով կ'իմացուի տեղեաւ կամ ժամանակաւ հեռուն գտնուողներուն մեր գաղափարներն ու խորհուրդները հաղորդելու համար հնարուած նշաններու գրութիւնը որ Գիր կը կոչուի։

Այս նշանները եւ անոնց բաղադրութիւնները հընչմանց եւ բառից պատկերներն են։

171. Գիրը քանի կերպ է։

Երկու. Ձեւաւոր գիր. եւ Ձայնաւոր կամ Այբուբենական գիր։

172. Ձեւաւոր գրութիւնը ո՞րն է։

Ձեւաւոր գրութեամբ կ'իմացուի նախ՝ Նշանակական գրութիւնը։ Նշանակ կ'ըսուին այն ձեւերը որ բնական իրաց պատկերներ ըլլալով՝ ուրիշ գաղափարներ նշանակելու կը գործածուին. այսպէս առիւծը՝ զօրութեան, աղուէսը՝ խորամանկութեան, մանիշակը՝ համեստութեան, օրինակ մը ձեռքը կըշիռ՝ արդարութեան նշանակ համարուած են։ Նըշանակական էր Եգիպտացւոց մէկ տեսակ գրութիւնը որ Մեհենական այսինքն սրբազան գիր կոչուած է։ Ձեւաւոր գրութիւն են երկրորդ՝ Չինաց կամ Սինէացւոց գիրերը որոնք ոչ թէ յօդաւոր հնչումներու այլ գաղափարներու կամայական նշաններ են, ուստի եւ անոնց մէջ որչափ բառ կայ այնչափ նըշան կայ։ Ձեւաւոր գրութեան կը վերաբերին երրորդ՝ (արաբացի) Թուանշանները ու ալճեպրական նշանները։

173. Ձայնաւոր գրութիւնը ո՞րն է։

Ձայնաւոր գրութեամբ կ'իմացուին այբուբենական գիրերը որոնք ուղղակի գաղափար չեն յայտներ, այլ մարդկային ձայնին այլ եւ այլ հնչումներուն պատկերներն են, եւ պարզ կամ բաղադրեալ կերպով գաղափարներ ցուցնելու կամայաբար որոշուած են։ Այժմու Հեռագրական նշանները եւ հին Սեպաձեւ գիրերը ձայնաւոր գրութեան կը վերաբերին։

174. Նշաններն ի՞նչ ազդեցութիւն ունին։

Նշանները, մանաւանդ արուեստական նշանները կամ լեզուն, մտքին զարգացմանը գլխաւոր մէկ միջոցն են։ Լեզուին միջոցաւ մեր գաղափարները նիւթական նշաններու կամ բառերու հետ կապելով՝ գաղափարաց, մանաւանդ վերացեալ եւ ընդհանուր գաղափարաց, իբր թէ մարմին եւ հաստատութիւն կու տանք։ Առանց լեզուի՝ շատ գաղափարներ, նիւթական իրաց գաղափարներն անգամ, դիւրաւ կրնային կորսուիլ կամ մոռցուիլ. եթէ ոչ անհնարին՝ գէթ շատ դժուարին եւ անկատար պիտի ըլլար՝ վերացնել, լուծել, բաժնել, իմաստաւորել, որոնք մտքին գլխաւոր գործողութիւններն ու գիտութեան հարկաւոր միջոցներն են։

175. Լեզուի մէջ սորվելու քանի՞ բան կայ։

Երկու. գաղափարաց նշան եղող բառերու [illegible] մը, եւ անոնց միջոցաւ խօսք կապելու օրէնքը։

176. Գաղափարաց նշան եղող բառերը սորվելու մէջ ի՞նչ ընել կը պահանջուի։

Կը պահանջուի բառերուն հետ, որ նշաններ են, անոնց նշանակած գաղափարները յստակ եւ որոշ ըմբռնել. եւ ասիկա կ'ըլլայ բառերուն ճիշդ սահմաններ տալով. ապա թէ ոչ գաղափարները հաստատուն եւ որոշ նշաններ ունեցած չեն ըլլար; եւ անոնց ու բառերուն մէջ տեղ տեղի չունենար այն բնական կապակցութիւնը՝ որ նշանին ու նշանակեալ իրին մէջ տեղ հարկաւ կը պահանջուի։ Ասկէ կը ծնանին բացատրութեան մէջ դժուարութիւն եւ խառնակութիւն, եւ մտքին զարգացմանը դէմ արգելքներ. քանզի գաղափարները որոշ նշաններու ա-

ւանդելով է որ միտքն իր գործողութիւններուն մէջ առաջ կ'երթայ։

177. Խօսք կազմելու օրէնքն ինչ է։

Խօսք կազմելու օրէնքն այն բնական միօրինակ կերպն է որով միտքը կը կազմէ իւր դատումները, որոնց իրարու հետ նոյնպէս բնական եւ միօրինակ կերպով մը կապուելէն՝ կ'ելլէ իմաստ կամ մտածութիւն։

178. Ո՞ր ուսումը կամ գիտութիւնն է որ աս օրէնքներուն վրայ կը խօսի։

Ընդհանուր Քերականութիւնը որ ամեն լեզուի համար մի եւ նոյն է, եւ կը տարբերի Մասնաւոր Քերականութենէ որ իւրաքանչիւր լեզուի յատուկ կանոններուն վրայ կը խօսի։ Զոր օրինակ. բառերուն բաժանումը, խօսքի մը՝ նախադասութիւններէ, իւրաքանչիւր նախադասութեան ալ՝ Ենթակայէ մը, Ստորոգելիէ մը եւ Դիմաւոր բայէ մը բաղկանալը՝ Ընդհանուր Քերականութեան կը վերաբերին. Անուանց այսչափ կամ այնչափ հոլով եւ հոլովմունք ունենալը, բառերուն այս ինչ կամ այն ինչ կերպով իրարու հետ համաձայնիլը եւ խօսքի մէջ շարուիլը՝ Մասնաւոր Քերականութեան նիւթ են։

179. Միտքն իր դատումներն ինչպէս կը կազմէ։

Գոյացութեան մը վրայ յատկութիւն մը հաստատելով. ուստի եւ ամեն դատում երեք մասէ կը բաղկանայ. Ենթակայէ մը՝ որ գոյացութիւնն է, Ստորոգելիէ մը՝ որ յատկութիւնն է, եւ Բայէն՝ որ ստորոգելին կամ յատկութիւնը ենթակային կամ գոյացութեան վրայ հաստատող մասն է։ Ասոր համեմատ պէտք է որ նախադասութիւնը, որ մտքին

դատողութեանը խօսքով բացատրութիւնն է, յիշեալ երեք մասերը յայտնի կամ լռելեայն պարունակէ։ Աստուած է արդար․ ահա դատում միանգամայն նախադասութիւն։

180․ Գոյացութիւն ցուցնող բառերը ինչ կը կոչուին եւ քանի տեսակ են։

Գոյական կ'ըսուին, եւ երկու տեսակ են․ իրօք գոյութիւն ունեցող իրերու կամ անհատներու անուններ, եւ վերացեալ կամ սեռի անուններ որոնք բնութեան մէջ իրական գոյութիւն չունին․ ուստի եւ երկու տեսակ գոյականներ կան յատուկ եւ հասարակ։

181․ Յատկութիւն ցուցնող բառերն ինչ կը կոչուին։

Ածական կը կոչուին։

182․ Միտքն իր դատողութիւններուն երկու եզրները, ենթական եւ ստորոգելին, միշտ պարզ կ'ըմբռնէ։

Շատ անգամ զանոնք յաւելուածներով կ'ըմբռնէ։

183․ Յաւելուածն ինչ է։

Յաւելուած կամ խնդիր կ'ըսուի առարկայ մը որ ենթակային կամ ստորոգելւոյն հետ յարաբերութեան մը մէջ է։

184․ Յարաբերութեան մէջ ըլլալն ինչ է։

Երկու բան իրարու հետ յարաբերութեան մէջ կ'ըսուին, երբ որ եւ իցէ կերպով իրարու կը վերաբերին․ զոր օրինակ՝ երբ մէկը սատցիչ է միւսն ըստացեալ, մէկը գործող՝ միւսը գործողութեան առարկայ, եւ կամ մէկը միւսին պարագան է։

185․ Խօսքի մէջ յարաբերութիւն ցուցունող բառը որն է։

Յարաբերութիւն ցուցունող բառն է Նախադրութիւնն ու Շաղկապը։ Նախադրութիւնը բառերու յարաբերութիւնը կը ցուցնէ, Շաղկապը՝ նախադասութիւններու։

186. Ուրեմն բառերը քանի՞ տեսակ են։

Բառերը ճշդիւ խօսելով չորս տեսակ են. 1. Գոյացութեան բառեր (Գոյական). 2. Յատկութեան բառեր (Ածական). 3. Հաստատող բառ (Բայը որ էական բայն է). 4. Յարաբերութեան բառեր (Նախադրութիւն եւ Շաղկապ)։

187. Լեզուաց մէջ աս չորս տեսակէն ուրիշ տեսակ բառեր չկա՞ն։

Կան, այսինքն՝ Դերանուն, Յօդ, Ընդունելութիւն (Անցեալ դերբայ), Մակբայ եւ Ձայնարկութիւն։ Բայց դերանունը գոյականներն կը վերաբերի. յօդն ու ընդունելութիւնը՝ ածականներն, մակբայը հաւասար է խնդրով մէկտեղ նախադրութեան, ձայնարկութիւնն ալ ամբողջ խօսքի մը հաւասար է։

188. Միտքն իր դատումներն իրարու նկատմամբ ի՞նչպէս կ'ըմբռնէ։

Միտքն առարկայի մը կամ իրողութեան մը վըրայ ըրած դատումները միշտ իրարու հետ յարաբերութեան մը մէջ կ'ըմբռնէ. ուստի պէտք է որ խօսքն ալ որ շատ անգամ այլ եւ այլ նախադասութիւններու (դատումներու) բաղադրութիւնն է՝ անոնց յարաբերութիւնը յայտնէ, եւ ասիկա շաղկապներու միջոցով կ'ըլլայ։

189. Դատումները քանի՞ տեսակ են։

Երկու. գլխաւոր եւ երկրորդական։

190. Գլխաւոր դատումը ո՞րն է։

Գլխաւոր դատումն ան է զոր միտքն իր մը կամ խրողութիւն մը իր տեսութեանն առարկայ ըրած ատենը՝ նախ եւ առաջ կ'ընէ։

191. Երկրորդական դատումը ծրն է։

Երկրորդական կ'ըսուին ան դատումները որ գըլխաւորէն կը հետեւին եւ անոր հետ յարաբերութիւն կամ կապակցութիւն մը ունին։ Զոր օրինակ՝ միտքը հետեւեալ դատումը կ'ընէ. Բոլոր մարդիկ երջանկութեան հասնիլ կ'ուզեն. ասիկա գլխաւոր դատում մըն է. Բայց եւ այնպէս երջանիկ հարուստներ շատ քիչ կը գտնուին. ահա երկրորդական դատում մը որ առջինէն հետեւեցաւ, իբրեւ անոր հակադրեալը. Բայց շաղկապն աս հակադրութիւնը կը բացատրէ։

192. Գլխաւոր եւ երկրորդական դատմանց մէջ տեղ եղած յարաբերութիւնը քանի տեսակ է։

Երկու. մասնական եւ ընդհանուր։

193. Մասնական յարաբերութիւնը ծրն է։

Մասնական կ'ըսուի դատման յարաբերութիւնը, երբ երկրորդական դատումը գլխաւոր դատման մէջ գտնուած բառի մը յաւելուած է։

194. Ընդհանուր յարաբերութիւնը ծրն է։

Ընդհանուր կ'ըսուի դատման յարաբերութիւնը, երբ երկրորդական դատումը գլխաւորին ամբողջ իմաստին կը վերաբերի։ Զոր օրինակ. Ծնջրին, որ իմացական կարողութեամբ շատնէն ալ կաղկէն տղուքն է, խօսողութեան գրեթէ հաւասար ձիրք մը բնութենէն ընդունած է։ Նոտր գրով նշանակուած դատումը մասնաւոր է։ Երջանկութեան հասնելու համար բոլոր մարդիկ, հարստութիւն կը փնտռեն. Բայց եւ այնպէս երջանիկ հարուստներ շատ քիչ կը գտնուին.

հոս նօտր գրով նշանակուած դատումն ընդհանուր է։

195. Խօսք մը որուն մէջ դատումներուն յարաբերութիւնն ընդհանուր է՝ ինչ կը կոչուի։

Պարբերութիւն կը կոչուի. եւ ան առեն գլխաւոր ու երկրորդական դատումները պարբերութեան անդամները կ'ըսուին, եւ կրնան պարզ եւ բաղադրեալ ըլլալ։ Զոր օրինակ. Եթէ մեզի մեր ուխտաւորութեանը վրայ գաղափար տուող բան մը կայ, || ամէնէն մեր ծնունդէնէն ետքը մեր գտնուած վիճակն է։ Ահա պարզ պարբերութիւն մը։ Մարդ իրեն հետ համամիտ եւ համակիր եղողներուն հետ երկայն ատեն գժտուած չի կրնար մնալ, | վերջապէս կը հաշտուի. || Բայց իրեն հակառակախոհ եւ հակակիր եղողներուն հետ սիրով եւ միաբանութեամբ ըլլալու վայրապար կ'աշխատի. | այսպիսիք կանուխ կամ անագան իրարմէ կը բաժնուին։ Ահա բաղադրեալ պարբերութիւն մը։

196. Միտքն իր դատումները քանի կերպով ընդհանուր յարաբերութեան մէջ կ'ըմբռնէ։

Երեք կերպով. իբրեւ իրարմէ կախում ունեցող, իբրեւ իրարու հակադրեալ, եւ իբրեւ իրարու պատճառ եւ գործ, կամ փաստ եւ հետեւութիւն։

Մինչ Մենտոր եւ Հազայէլ կը խօսէին, ոսկեգոյն եւ կապուտակ թեփերով ծածկուած դլփիններ տեսան։

Պատանի էր, բայց գաղտնիքս պահելու ունակութեան մէջ ծերացած էր։

Աստուած անսահման կատարեալ եւ անհուն բարի է. ուստի ու կրնայ խաբուիլ, ու ալ մեզ կը խաբէ։

Աս օրինակներէն առաջնոյն մէջ դատմանց յարաբերութիւնը կախում է, երկրորդին մէջ հակադ-

*բութիւն, երրորդին մէջ փաստ եւ հետեւութիւն**։

197. *Քերականութիւնը, մանաւանդ ընդհանուրը, գիտութեանց ո՞ր տեսակին կը վերաբերի եւ անոր մեթոտն ի՞նչ է։*

*Քերականութիւնը բարոյական կոչուած գիտութեանց առաջին կարգին (156, 157) կը վերաբերի, եւ մեթոտը փորձառականն է, որ մաքին խորհելու օրէնքները դիտելով, լուծելով եւ բաժնելով յառաջ կ'երթայ։*



## ՄԱՍՆ Բ.

### ԲԱՐՈՅԱԿԱՆ

198. *Բարոյականն ի՞նչ է։*

*Բարոյական կ'ըսուի Պարտաւորութեան եւ Բարւոյ ու չարի գաղափարներուն ուսումը։*

199. *Աս գաղափարներուն ծագումն ուստի՞ է։*

*Անոնց ծագումը բանէն եւ բարոյական կոչուած զգացումէն (27) է։ Բանը կու տայ՝ պարտաւորութեան, բարոյական զգացումը՝ բարւոյ եւ չարի գաղափարը։*

200. *Պարտաւորութիւնն ի՞նչ է։*

---

* *Վերլուծութեան ճամբուն քերականական և գրագիտական ուսման ունեցած մեծ կարեւորութիւնը գիտնալով, կը հրատարակենք Հայկազեան Ընկերութեան ծախիւք մեր վերլուծութեան երկրորդ տպագրութիւնն՝ առջինէն աւելի ընդարձակ. և կը յորդորենք ուսուցիչներն ըստ կարի երկայն և հիմնովին կրթելու իրենց սաները վերլուծութեան մէջ։*

Պարտաւորութիւն կ՚ըսուի ան որուն տակ դրուած է մարդ հեղինակութենէ մը վաւերացեալ օրէնքով։

201. Բանէն ինչպէս կ՚ունենանք պարտաւորութեան գաղափարը։

Մեր գործողութիւններուն օգտակարութենէն կամ վնասակարութենէն կը հետեւցնենք բանիւ որ պարտական ենք այսպէս վարուիլ կամ գործել եւ ոչ այլազգ։ Եւ բանին աս թելադրութիւնը կամ ազդումը կը կոչուի Պարտաւորութեան գաղափար կամ պարտաւորութեան ծանօթութիւն։

202. Պարտաւորութեան գաղափարը մեզի ուրիշ ինչ գաղափար կու տայ։

Պարտաւորութեան գաղափարէն, այսինքն՝ այն ծանօթութենէն թէ այս ինչ բանն ընելու կամ չընելու պարտաւոր ենք՝ կը հետեւցնենք թէ այն պարտաւորութիւնը օրէնք մըն է, եւ բարոյական օրէնք կը կոչենք զայն վասն զի ազատ ենք անոր հետեւելու եւ չհետեւելու. ասով կ՚որոշենք զայն մեր բնութեանը վերաբերեալ ուրիշ օրէնքներէն որոնք հարկաւոր ըլլալուն համար բնական կը կոչենք։

203. Բարւոյ եւ չարի գաղափարն ինչպէս կ՚ունենանք։

Մեր այսպէս եւ ոչ այլազգ վարուելու կամ գործելու պարտաւորութիւնը բանիւ ճանչնալէն ետքը, երբ այն պարտաւորութեան համաձայն կամ անհամաձայն կը գործենք, աս համաձայնութեան կամ անհամաձայնութեան համեմատ բարոյական զգացմամբ (27) հաճութիւն կամ վիշտ մը կ՚իմանանք։ Երբ գործողութիւնը մեր բարոյական զգացմանը հա-

Ճոյական է, բարի կը կոչենք, երբ անհաճոյ կամ վշտալի է, չար կ'անուանենք։

204. Այս սկզբան համեմատ պարտաւորութիւնը քանի՞ է։

Կրկին. Դրական՝ որ ընել կը պատուիրէ բարին, եւ բացասական՝ որ ընել կ'արգելու չարը։

205. Բարոյական զգացումէն ուրիշ ինչ զգացում կը հետեւի։

Բարոյական զգացումէն, այսինքն՝ գործողութեան մը պարտաւորութեան համաձայն (բարի) կամ անհամաձայն (չար) ըլլալէն կը հետեւի ուրախանաց եւ տրտմանաց զգացումը, որուն համեմատ բարին՝ վարձուց, եւ չարը պատժոյ արժանի կը դատենք։

206. Աս զգացումէն ինչ յառաջ կու գայ։

Աս զգացումէն, այսինքն բարւոյն՝ արդիւնաւոր (վարձուց արժանի), եւ չարին ապարդիւնաւոր (պատժոյ պարտական) ըլլալուն ճանաչումէն կը հետեւի բարոյական գիտակցութիւնը որուն հայերէն խիղճ մտաց կ'ըսենք։

207. Բարոյական օրինաց գլխաւոր յատկութիւնը ո՞րն է։

Բարոյական օրինաց գլխաւոր յատկութիւնը պարտաւորիչ ըլլալն է, եւ ասոր համար հարկ է որ օրէնքը յայտնի եւ կարելի ըլլայ. քանզի մարդ չի կրնար պարտաւորիլ այն բանին զոր չի գիտեր եւ չի կրնար կատարել. Թէպէտ բարոյական գործող մը 'ի հարկէ անձնիշխան (ազատ) ըլլալուն համար՝ կրնայ յայտնի եւ կարելի պարտաւորիչ բարոյական օրէնք մը զանց ընել։

208. Բարոյական գործողն ո՞վ է։

Բարոյական գործող ան է որ բարոյական օրէնքի մը հնազանդելու պարտական է ։

209. Բարոյական գործողի մը գլխաւոր յատկութիւնները որո՞նք են ։

Բարոյական գործողի մը գլխաւոր յատկութիւններն են՝ դատողութեամբ հնազանդելու, կարողութեամբ չհնազանդելու, եւ հետեւապէս ազատօրէն հնազանդելու կարողութեամբ ։

210. Բարոյական գործողին բարոյական օրինաց հնազանդելու պարտաւորութեան գլխաւոր շարժառիթը ո՞րն է ։

Այս շարժառիթը բարոյական գործողին ճշմարիտ շահն է ։

211. Ճշմարիտ շահ ըսելով ի՞նչ կ'իմացուի ։

Ճշմարիտ շահ ըսելով կ'իմացուի մարդուս բանաւոր եւ քրիստոնեան օգուտը ։ Ասիկա տարբեր է մարդուս զգայական եւ սուտ օգտէն որ կրնայ ճշմարիտ օգտին յաղթել ։ Ան ատեն է որ մարդս պարտաւորութեան մը դէմ կը գործէ, եւ այն գործողութեան համար կ'ըսենք թէ յանցաւոր (պատժոյ արժանի), անբարոյական կամ մոլեկան է. ինչպէս որ երբ մարդ զգայական եւ սուտ օգուտը զոհելով պարտաւորութեան կը հնազանդի, այն գործողութեան համար կ'ըսենք թէ արդիւնաւոր (վարձուց արժանի), բարոյական կամ առաքինական է ։ Ուստի եւ առաքինութեան ու վարձուց, մոլութեան եւ պատժոյ մէջտեղ հարկաւոր յարաբերութիւն մը կայ ։

212. Աս յարաբերութիւնն ի՞նչպէս իրական կ'ըլլայ ։

Բարոյական վարձատրութեամբ ։

213. Բարոյական վաւերացումն ինչ է։

Օրէնքի մը վաւերացումն՝ անոր գործադրութեանը համար կամ բռնաբարութեանը դէմ որոշուած վարձուց կամ պատժոց բովանդակութիւնն է։ Ինչպէս որ ամեն դրական օրէնք իր դրական վաւերացումը (պատժական օրէնքն) ունի, այնպէս ալ բարոյական օրէնքն ունի իր բարոյական վաւերացումը։

214. Բարոյական օրինաց գլխաւոր վաւերացումը քանի՞ է։

Բարոյական օրինաց գլխաւոր վաւերացումը կամ վարձքն ու պատիժը երկուք է.

1. Խղճին գոհութիւնը կամ բարոյական զգացումը, իբր հաճութիւն, հնազանդութեան մէջ, եւ խղճին տժգոհութիւնը կամ նոյն բարոյական զգացումը, իբր տհաճութիւն (վիշտ, խայթ), անհնազանդութեան մէջ։

2. Մարդոց գոհութիւնը կամ տժգոհութիւնը, որուն հետեւանքն է յարգանք կամ պարսաւանք, վարձք եւ պատուհաս։

215. Ասոնց երկուքն ալ անվրէպ են։

Առաջինը որ է բարոյական զգացումը կամ խայթը՝ երբեք չվրիպիր, քանզի ուղիղ բանէն կը բղխէ. բայց երկրորդը միշտ եւ անվրէպ չէ։ Մարդիկ միշտ արդար չըլլալով շատ անգամ առաքինութեան պատշաճ եղած յարգանքը կամ վարձքը յանցանաց կու տան, յանցանաց պարտաւոր եղած պարսաւը կամ պատիժն ալ՝ առաքինութեան։ Ասիկայ բարոյական չարիք կը կոչուի, եւ մեզի կը թելադրէ արդարութեան գաղափարը որմէ կը հետեւցնենք բարո-

յական օրինաց՝ երրորդ վաւերացումը, որ է միշտ արդար Աստուծոյ գոհութիւնն ու տժգոհութիւնը, այսինքն թէ բուն վարձքն ու պատիժը մեզի հանդերձեալ կենաց մէջ կը մնան։ Աս վաւերացման հիմն են Աստուծոյ գոյութեան եւ հոգւոյ անմահութեան գաղափարները որոնք Բնական աստուածաբանութեան կը վերաբերին։

216. Բարոյական պարտաւորութեան կամ բարոյական օրինաց գլխաւոր փաստն ուստի է։

1. Բանէն կամ բարոյական զգացումէն (27, 28), եւ 2. Մարդոց վկայութենէն։

1. Ամեն զգաստ միտք, եթէ ուղիղ բանին անսայ, պիտի հաւանի որ բարոյական օրինաց կատարումը՝ բարոյական պարտաւորութիւն մըն է որմէ կախուած ունի մարդուն ճշմարիտ շահը։ Ո՞վ մեծ հաճութիւն մը չզգար երբ իր վարմունքը բարոյական օրինաց համաձայն կը տեսնէ, կամ կը լսէ այնպիսի գործերու պատմութիւնը որոնք մարդկութեան պատիւ են։ Ընդ հակառակն ով ճշմարիտ վիշտ մը չըզգար, երբ այն օրինաց անհնազանդ կը գտնուի, եւ կամ ականատես կամ․ ականջալուր է այնպիսի իրողութեան մը որ հակառակ է մարդուս արդարութեան եւ անիրաւութեան գաղափարին. 2. Գրեթէ բոլոր ազգաց օրէնսդրութիւնը որ նոյն սկզբանց վրայ կը կայանայ, եւ որուն կարգադրութիւնները գրեթէ առ հասարակ մի եւ նոյն են՝ բարոյական օրինաց կուտայ ուրիշ հեղինակութիւն մը (փաստ մը) որ մարդկային վկայութեան հեղինակութիւն կը կոչուի։ Աս երկու սկզբունքէն, Բանէն եւ Մարդկային հեղինակութենէն փորձառական մեթոտով կ՚ապա-

ցուցուցին բարոյական կանոնները որոնց բովանդակութիւնը կը կազմէ բարոյականի գիտութիւնը։

217. Աս գիտութիւնն ի՞նչ կը կոչուի։

Կը կոչուի Մասնաւոր Բարոյական, ինչպէս որ Ընդհանուր բարոյական կը կոչուին այն սկզբունքները որոնց վրայ ցարդ խօսեցանք։

218. Մասնաւոր բարոյականը քանի՞ կը բաժնուի։

Մարդուս կրկին, այսինքն՝ դէպ առ Ինքն եւ առ իւր Նմանիս ունեցած յարաբերութեանը նայելով 1. Անհատական բարոյական եւ 2. Ընկերական բարոյական։

219. Անհատական բարոյականին առարկան ի՞նչ է։

Անհատական բարոյականին առարկան է իւրաքանչիւր մարդոյ իւր անձը։

220. Մարդուս առ ինքն ունեցած պարտաւորութիւնը քանի՞ նկատմամբ է։

Երկու. հոգւոյն եւ մարմնոյն նկատմամբ։ Հոգւոյն նկատմամբ մարդ պարտական է իւր մտաւոր կարողութիւններն անարատ պահել եւ զարգացնել։ Զգայնութիւնը անարատ պիտի պահուի որպէս զի իմացողութիւնն ու կամքը չխանգարի, զգուշանալով այն ամեն զգայական անկարգութիւններէ որոնք զգայնութեան կարողութեանը կրնան վնասել։ Իմացողութիւնը պիտի զարգացուի, որպէս զի միտքը միշտ ճշմարտութեան համնի եւ մոլորութենէ կամ սխալումէ ազատ ըլլայ։ Կամքը պիտի մշակուի կամ կրթուի որպէս զի յարմար եւ կարող ըլլայ իր սուտ [illegible] շահը ճշմարիտ շահուն զոհելու (211)։ Ասկէ կը հետեւի որ [illegible] ու [illegible] բարոյական պարտաւորութիւն է։

Մարմնոյն նկատմամբ մարդ պարտական է իւր գործարաններուն պահպանութեանը հսկել, մարմնոյն ախտաքներէն հեռանալ, եւ անոնցմէ զգուշանալու ջանալ։ Զոր օրինակ՝ նայիլ որ իր աշխատութիւնը ուժոյն հաւասար ըլլայ, սնունդը՝ ախորժելի, հանդգիստը՝ յօգնութեանը, այլոցմէն հանդերձ։ Ասկէ ալ կը հետեւի որ անձնասպանութիւնը ոճիր է։

Անհատական բարոյականին առարկան է մարդուս անձին պահպանութիւնը, եւ աս զգացումը մարդուս բնական է, աս նկատմամբ բարոյական օրէնքը կրնայ նաեւ Բնական օրէնք ըսուիլ։

221. Մարդուս առ իւր նմանիս ունեցած պարտաւորութեան սկզբունքն ինչ է։

Մարդուս առ իւր նմանիս ունեցած պարտաւորութեան սկզբունքը Գթասիրութիւնն է։ Բոլոր մարդիկ իրարու նման եւ հաւասար ըլլալով մի եւ նոյն իրաւունքն ունին, եւ որովհետեւ ամեն իրաւունք փոխադարձ պարտաւորութիւն մը կ'ենթադրէ, ասկէ կը հետեւի Ոսկեղէն կոչուած կանոնը թէ Մի ընէր ուրիշին ինչ որ չես ուզեր որ ուրիշը քեզի ընէ։

222. Մարդուս առ իւր նմանիս ունեցած պարտաւորութիւնը քանի է։

Երկու. առ ընկերն, եւ առ ընկերութիւն։

223. Մարդուս առ ընկերն ունեցած պարտաւորութիւնը քանի նկատմամբ է։

Չորս. անոր կենացը, ազատութեանը, համբաւոյն եւ իրեն վերաբերեալներուն։

Առաջինը կ'արգելու սպանութիւնը, բաց յօրինաւոր պաշտպանութեան դէպքերէն, եւ ոճրագործաց համար օրինաւոր իշխանութեան տուած վճռ-

ճու վճռէն ։ Աս պարտաւորութիւնը կ՚արգելու նաւ եւ անձամբ զրկանաց վրէժ խնդրելը, եւ մենամարտութիւնը ։ Ասոր կը վերաբերին նաեւ ուրիշին միտքը մոլորեցնելն ու բարքն ապականելը որ բարոյապէս սպաննել է ։

Երկրորդը կ՚արգելու բռնութիւնը ։ Ասկէ կը հետեւի որ տիրապետութիւնը (տէսփօթիզմ) եւ աշխարհակալութիւնը կերպով մը բարոյական օրինաց դէմ են ։

Երրորդը կ՚արգելու զրպարտութիւնը, սուտը եւ սուտ վկայութիւնը ։

Չորրորդը՝ գողութիւնը, յափշտակութիւնը, խարդախութիւնը եւ, ամուսնական յարաբերութեան մէջ, շնութիւնը ։

224. Մարդուս առ ընկերութիւնն ունեցած պարտաւորութիւնները որո՞նք են ։

Ընկերութեան կամ տէրութեան մէջ կայ ազգ, քաղաք եւ ընտանիք ։

Մարդս ազգի եւ քաղաքի մէջ է՝ Հրապարակական մարդ կամ վարիչ, եւ Առնական մարդ կամ ընդ վարչութեամբ ։

Իբրեւ հրապարակական մարդ կամ վարիչ (կառավարող), պարտական է օրէնքը ոչ միայն յարգել տալ այլ եւ յարգել ․ ընդ վարչութեամբ եղողներուն (կառավարելոց) արդարութիւն ընել, անոնց ապահովութեանը հսկել, եւ անոնց երեքկին՝ բարոյական, մտաւոր եւ բնական զարգացման միջոցները հոգալ ։

Իբրեւ առնական մարդ կամ ընդ վարչութեամբ, պարտական է վարչութեան գործունեայ հնազան–

դութիւն, երբ վարչութեան պատուէրներն ու կարգադրութիւններն օրինաց համաձայն են. եթէ համաձայն չեն՝ կրաւորական հնազանդութիւն, այսինքն՝ չապստամբիլ բայց գործակից ալ չըլլալ, ամեն կարելի եւ օրինաւոր միջոցներով իմացնելով վարչութեան որ ըրածը կամ պատուիրածը օրինաց եւ արդարութեան համաձայն չէ:

Մարդս ընտանեաց մէջ է՝ Որդի, Ամուսին, Ծընող, Տէր եւ Սպասաւոր:

Իբրեւ որդի՝ մարդ պարտական է իր ծնողքը պատուել, յարգել, սիրել, անոնց խորհուրդ հարցընել, հնազանդիլ, նպաստել անոնց երբ կարօտութեան մէջ են, համբերել անոնց թերութեանցը, առաքինութիւններուն նմանիլ, անոնց իր վերջին պարտքը հատուցանել, եւ ըստ օրինաց անոնց վերջին կամքը կատարել:

Իբրեւ ամուսին՝ մարդ պարտական է իւր ընկերոջը սէր, վստահութիւն, հաւատարմութիւն, օգնութիւն, մխիթարութիւն, պաշտպանութիւն եւ անոր ընկերական վիճակին համեմատ ապրուստը հոգալ:

Իբրեւ հայր՝ մարդ պարտական է իւր զաւկները սիրել, սնուցանել, պահպանել, կրթել, անոնց վըրայ հսկել, զանոնք խրատել եւ ուղղել, անոնց բարի օրինակ տալ, եւ ընկերութեան մէջ անոնց կացութիւն մը ունենալուն հոգ տանել:

Իբրեւ տէր՝ մարդս պարտական է իր գործաւորներուն կամ սպասաւորացը վարձքը տալ անոնց վաստակոցն ու ծառայութեանը համեմատ, անոնց հետ ըրած պայմանները հաւատարմութեամբ կատարել, անոնց հետ քաղցրութեամբ եւ մարդասիրու-

թեամբ վարուիլ, անոնց խնամ եւ օգնութիւն ընել անոնց թշուառութեանը եւ կարօտութեանը մէջ։

Իբրեւ սպասաւոր՝ պարտական է իւր տէրանցը նախանձաւորութիւն ; հաւատարմութիւն, անկեղծութիւն եւ զիջում։



# ՄԱՍՆ Գ.

## ԲՆԱԿԱՆ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆՈՒԹԻՒՆ

**225.** Բնական Աստուածաբանութիւնն ի՞նչ է։

Բնական Աստուածաբանութիւն կ'ըսուի Փիլիսոփայութեան այն մասը որ բնական ապացոյցներով կը խօսի Աստուծոյ գոյութեանն ու անոր Ստորոգելեացը վրայ։

**226.** Աստուծոյ գոյութեան ապացոյցները քանի՞ են։

Երեք. Բնական (Ֆիզիքական), Բարոյական եւ Բնազանցական։

**227.** Աստուծոյ գոյութեան բնական ապացոյցները քանի՞ են եւ ի՞նչ կ'անուանին։

Աստուծոյ գոյութեան բնական ապացոյցները երեք են, եւ կ'անուանին. 1. Նիւթոյ գոյութենէն, 2. Նիւթոյ շարժումէն եւ 3. Տիեզերաց յօրինուածութենէն (կարգաւորութենէն)։

Նախ՝ գոյ ըլլալը հարկաւոր չէ նիւթոյ, քանզի կը տեսնենք որ նիւթական իրերը դիպուածոյ (ներընդունական) են. այսինքն՝ կրնային չըլլալ։ Երկրորդ՝ շարժումն ալ նիւթոյ էական չէ, քանզի կըր-

նանք նիւթը դատարկին մէջ ալ ըմբռնել, եւ կը տեսնենք որ նիւթոյ շարժումն իր ուղղութիւնն ու արագութիւնը կը փոխէ. ասիկա չէր կրնար ըլլալ, եթէ շարժումը նիւթոյ էական ըլլար: Երրորդ՝ ինչպէս ամեն յօրինուածութիւն, նոյնպէս տիեզերաց յօրինուածութիւնը իմացական յօրինող մը կ'ենթադրէ, եւ գերագոյն իմացական յօրինող մը՝ եթէ յօրինուածութիւնը գերագոյն է. ապա ուրեմն նիւթը ինքնագոյ արարիչ մը, առաջին շարժիչ մը եւ գերագոյնս իմացական յօրինող մը ունի: Այսպիսի էակ մը Աստուած է, ապա գոյ Աստուած:

228. Աստուծոյ գոյութեանը բարոյական ապացոյցները քանի՞ են եւ ուստի՞ կ'առնուին:

Ասոնք ալ երեք են, եւ կ'առնուին. 1. Բնական օրէնքէն, 2. Գերագոյն էակի մը հաւատալու անհակառակելի պիտոյքէն եւ 3. ժողովրդոց միաբան հաւանութենէն:

Նախ՝ մարդկային խիղճը բարին եւ չարը կը ճանչնայ. ըսել է թէ ասիկա մարդուս մտքին հարկաւոր մէկ օրէնքն է: Երկրորդ՝ ամեն մարդ 'ի յաջողութեան եւ 'ի ձախողութեան անհակառակելի կերպով կը դիմէ գերագոյն էակի մը՝ անոր շնորհակալ ըլլալու կամ՝ անկէ նպաստ ընդունելու համար: Երրորդ՝ բոլոր մարդիկ ամեն տեղ եւ ամեն ժամանակ խոստովանած են թէ կայ գերագոյն էակ մը. ասիկա ընդհանուր, հաստատուն եւ բնական աւանդութիւն մըն է: Ապա կայ գերագոյն էակ մը որ այն բնական օրէնքը դրած է, յաջողութեան եւ ձախողութեան գերագոյն հեղինակն է, եւ այն ընդհանուր աւանդութեան աղբիւրն է:

Այսպիսի էակ մը Աստուած է, ապա գոյ Աստուած ։

229․ Աստուծոյ գոյութեան բնազանցական ապացոյցը քանի՞ է եւ ուստի՞ կ՚առնուի․

Ասոնք երկու են, եւ կ՚առնուին․ 1․ Առաջին էակի մը հարկաւորութենէն կամ բացարձակ պատճառի մը գաղափարէն, 2․ Անսահմանի կամ կատարեալ էակի գաղափարէն ։

Նախ՝ ինչ որ կայ դիպուածոյ է, այսինքն եղաւ ժամանակ որ չկար․ արդ ոչինչը չի կրնար ինչ մը յառաջ բերել, ապա ՚ի հարկէ կար հարկաւոր էակ մը, բացարձակ պատճառ մը որ ամեն բան գոյացոյց, ապա թէ ոչ աշխարհս գոյացած չէր ըլլար ։ Երկրորդ՝ մեր սահմանաւոր եւ անկատար իմացականութեանը մէջ կայ անսահմանի եւ կատարեալ էակի գաղափարը․ եթէ անսահմանը, կատարեալ էակը, չըլլար, անսահմանն ու կատարեալը սահմանաւորին եւ անկատարին ծնունդը պիտի ըլլային, որ անտեղի է ։ Ապա կայ հարկաւոր եւ բացարձակ պատճառ մը, անսահման եւ կատարեալ էակ մը ։ Այսպիսի էակ մը Աստուած է, ապա գոյ Աստուած ։

230․ Աստուած ինչպիսի՞ էակ է ։

Աստուծոյ ինչպիսի էակ մը ըլլալը կը ճանչցուի անոր ստորոգելիքներէն, այսինքն՝ անոր էական յատկութիւններէն ։ Արդ Աստուծոյ ստորոգելիքն են՝ անսահմանութիւն, անսահման կարողութիւն, անսահման իմացականութիւն, անսահման ազատութիւն, անսահման բարութիւն, անսահման արդարութիւն, անսահման գիտութիւն, ամբաւութիւն եւ յաւիտենականութիւն ։

231․ Աստուած ինչէ՞ն անսահման է ։

Աստուած (ինչպէս ըսուեցաւ) առաջին պատճառ է . առաջին պատճառը պէտք է որ անսահման ըլլայ, քանզի եթէ սահմանաւոր ըլլար, ինք ալ ուրիշ պատճառ մը ունեցած պիտի ըլլար, ուստի եւ առաջին պատճառ չէր ըլլար։

232. Աստուծոյ անսահման կարողութիւնը, իմացականութիւնը, ազատութիւնը ուստի են։

Առաջին պատճառը, իբրեւ պատճառ, պէտք է որ կարող, իմացական եւ ազատ ըլլայ. եւ որովհետեւ իբրեւ առաջին պատճառ անսահման է, ապա անսահման կարող, անսահման իմացական եւ անսահման ազատ է։

233. Աստուած ինչէ՞ն անսահման բարի եւ արդար է։

Անսահման կարող պատճառը պէտք է որ նաեւ անսահման բարի եւ անսահման արդար ըլլայ, քանզի չարութիւնն ու անիրաւութիւնը չեն կրնար անսահմանութեան հետ միաբանիլ, քանզի անկատարութիւն կամ պակասութիւն են։

234. Աստուած ինչէ՞ն անսահման է գիտութեամբ։

Անսահման իմացական պատճառը պէտք է որ գիտութեան (գիտնալու, ճանչնալու) մէջ ալ անսահման ըլլայ։

235. Աստուած ինչէ՞ն ամբաւ եւ յաւիտենական է։

Անսահմանը ոչ տեղւոյ եւ ոչ ժամանակի մէջ կ'ամփոփուի, ապա Աստուած իբրեւ առաջին պատճառ անսահման ըլլալով, պէտք է որ ամբաւ կամ անհուն եւ յաւիտենական ըլլայ։

236. Աստուծոյ առաջին պատճառ ըլլալէն ինչ կը հետեւի։

Անոր նախախնամութիւնը։ Նախախնամութիւն ըսելով կ'իմացուի Աստուծոյ երեք յատկութիւնը. այն է՝ իմացականութիւնը, կարողութիւնը եւ բարութիւնը տիեզերաց վրայ ունեցած նպատակին մէջ։ Այսինքն թէ՝ իբրեւ անհուն իմացական ունեցաւ նպատակ մը, իբրեւ անհուն կարող զայն յարդիւնաւած, եւ իբրեւ անհուն բարի զայն կը պահէ։

237. Աստուծոյ գոյութեանը դէմ կա՞ն առարկութիւն ընողներ եւ ուստի կ'առնուն իրենց առարկութիւնները։

Աստուծոյ գոյութեանը դէմ կան առարկութիւն ընողներ եւ ասոնք իրենց առարկութիւնը կ'առնուն 1. Ի բնական (ֆիզիքական) չարեաց, եւ 2. Ի բարոյական չարեաց։

238. Բնական չարիքն ի՞նչ է, եւ ի՞նչ են անկէ հանուած առարկութիւնները։

Բնական չարիք ըսելով կ'իմացուին՝ ցաւք, հիւանդութիւնք, մահ, վնասակար անասունք եւ թունաւոր խոտոց գոյութիւնը, մրրիկներ, հրաբուխներ, սասանութիւնք (երկրաշարժ) եւ այլք։

Ուստի կ'ըսեն ոմանք.

1. Եթէ Աստուած ամենակարող ըլլար, աս ամեն չարիք կ'արգելուր։

2. Եթէ անսահման արդար ըլլար, չէր թողուր որ այն չարիքներն անխտիր ամեն մարդու պատահին։

5. Եթէ անսահման բարի ըլլար, զմարդիկ անոնցմէ կը պահէր։

Արդ եթէ Աստուծոյ կարողութիւնը, բարութիւնն ու արդարութիւնը անսահման չեն, Աստ-

ուած չկայ. քանզի չկրնար ըլլալ որ անսահման կարող, անսահման արդար եւ անսահման բարի չըլլալով՝ Աստուած ըլլայ։

230. Ասոնց ինչ պատասխան կը տրուի։

Ասոնց պատասխան կը տրուի.

1. Աստուած բնական չարիքը չարգելուր, կամ վասն զի պարտաւոր չէ, եւ կամ վասն զի իմաստուն պատճառ մը կամ գերագոյն նպատակ մը ունի որուն մեր խելքը չի հասնիր։

2. Աստուած թոյլ կու տայ որ ամեն մարդու անխտիր բնական չարիք պատահին, կամ վասն զի պարտական չէ խտրութիւն ընել, կամ վասն զի միայն աս աշխարհիս մէջ չէ անոր արդարութիւնը, եւ կամ թերեւս այն զոր մարդիկ չարիք կը կարծեն՝ բարիք է անոնց համար որ զայն կը կրեն։

3. Աստուած զմարդիկ բնական չարիքներէ՝ չի պահեր, կամ վասն զի իր նպատակին այնպէս յարմար է, կամ որպէս զի մարդիկ իրենց պահպանութեանը համար հսկող եւ զգուշաւոր ըլլան։ Կան չարիք ալ, ինչպէս հիւանդութիւնները, որոնց պատճառը շատ անգամ մեր անկարգութիւններն են, եւ մեզի կրնան 'ի խրատ ըլլալ, եւ վերջապէս Աստուած իբրեւ անիրաւ դատելու համար՝ հարկ էր մեզ Աստուծմէ վեր աստուած ըլլալ։

240. Բարոյական չարիքն ինչ է եւ ինչ են անկէ հանուած առարկութիւնները։

Բարոյական չարիք ըսելով կ'իմացուին մարդուս հոգւոյն անկատարութիւնները, ինչպէս մոլութիւն, տգիտութիւն, եւ մեր ազատութիւնը չարաչար գոր-

ծածկել յառաջ եկող անկարգութիւններ, ինչպէս սպանութիւն, եւ ուրիշ անիրաւութիւններ։ Ասկէ ալ նոյն առարկութիւնները կը հանուին։

1. Եթէ Աստուած ամենակարող է, ինչո՞ւ համար այս չարիքները չարգելուր։

2. Եթէ յանսահմանս արդար է, ինչո՞ւ համար թոյլ կու տայ որ ամեն մարդու անխտիր նոյն չարիքները պատահին։

3. Եթէ անսահման բարի է, ինչո՞ւ համար մարդիկ անոնցմէ չի պահեր։

241. Ասոնց ի՞նչ պատասխան կը տրուի։

Ասոնց պատասխան կը տրուի.

1. Աստուած բարոյական չարիքը չարգելուր, վասն զի զմարդ անձնիշխան ստեղծեց, եւ չուզեր անոր ազատութիւնը բռնաբարել. եթէ մարդ իր ազատութեամբը կը զեղծանի, յանցանքը մարդուն միայն է։

2. Աստուած կը թողու որ բարոյական չարիքն ալ ամեն մարդու անխտիր պատահին, վասն զի Աստուած իր կատարեալ արդարութիւնը հանդերձեալ աշխարհին պահած է, քանզի աստի անցաւոր է, եւ անդին յաւիտենական։ Դարձեալ բարոյական չարեաց թոյլ տալով Աստուած անիրաւ չըլլար. այլ անիրաւ կ'ըլլար, եթէ բարոյական չարիք գործողները միշտ անպատիժ թողուր։

3. Աստուած զմարդիկ բարոյական չարիքներէ չի պահեր, վասն զի բռնաբարած կ'ըլլար մարդուս ազատութիւնը յորում կը կայանայ անոր գործքերուն բարոյականութիւնը։ Դարձեալ բարոյական չարեաց մեծ մասը, զոր օրինակ՝ մարդկային հոգ-

ւոյն անկատարութիւնները, մոլորութիւն, չար հակամիտութիւններ, չար գործքեր, կը ցուցնեն թէ մարդս արարած ըլլալով, 'ի հարկէ սահմանաւոր է, եւ չի կրնար բոլորովին կատարեալ ըլլալ: Բայց որովհետեւ չարիքներէ ետ կենալու միջոցներն ունի, եթէ չի գործադրեր, ինքն է յանցաւոր:

242. Բնական Աստուածաբանութիւնն ուրիշ ինչ բաներու վրայ կը խօսի:

Կը խօսի նաեւ Հոգւոյն ոգեղէն, ազատ եւ անմահ ըլլալուն վրայ:

243. Ոգի կամ ոգեղէն ըսելով ինչ կ'իմացուի:

Ոգի կամ ոգեղէն ըսելով կ'իմացուի գոյացութիւն մը որ մի է, այսինքն՝ մասերէ չի բաղկանար, ուստի եւ անքակելի եւ պարզ է: Եւ որովհետեւ մասերէ բաղկացեալ եւ բաժանական ըլլալ նիւթոյ էական է, կը հետեւի թէ ոգին նիւթէն զատ կամ տարբեր բնութիւն ունեցող գոյացութիւն է:

244. Հոգւոյ մի կամ անբաժին եւ պարզ ըլլալուն, այսինքն մասերէ բաղկացած չըլլալուն, ինչ փաստ կը բերուի:

Ասոր սա փաստը կը բերուի որ եթէ հոգին մի չըլլար, մասերէ բաղկացած ըլլար, հարկաւ կը փոխուէր, կրնար նաեւ երբեմն արդէն եղածէն բոլորովին տարբեր ըլլալ, ինչպէս որ մարմիններուն կը պատահի. եւ հետեւաբար միշտ մի եւ նոյն չէր ըլլար: Ապա հոգւոյն գլխաւոր յատկութիւններն են Միութիւն (որ անբաժանականութիւն եւ պարզութիւն ալ կ'ըսուի) եւ Նոյնութիւն:

245. Հոգւոյն միշտ Մի եւ նոյն ըլլալուն ինչ վըկայութիւն կայ:

Գիտակցութեան կամ Ներքին զգայութեան վըկայութիւնը։ Գիտակցութիւնը կը զգայ որ, թէպէտ իւր զգացումները, գաղափարներն ու գործողութիւնները շարունակ կը փոխուին, ինք միշտ նոյն է։ Դարձեալ՝ եթէ Հոգին միշտ մի եւ նոյն չմնար, անցեալը, գէթ շատ հեռաւոր անցեալը, յիշելու կարող պիտի չըլլար։

246. Ազատութիւնն ինչ է։

Ազատութիւնը, փիլիսոփայական լեզուաւ, կը նշանակէ այն կարողութիւնը զոր Հոգին ունի կամել կամ չկամել, եւ, ոչ ֆիզիգապէս՝ այլ ներքնապէս գործել. կամ ուրիշ բառերով ըսենք՝ ազատութիւնը որոշում ընելու կարողութիւնն է։ Աս մտքով ազատութեան հայերէն Անձնիշխանութիւն կ՚ըսուի։

Անձնիշխանութիւնը կամ հոգեբանական ազատութիւնը յորում կը կայանայ բարոյական ազատութիւնը՝ կայ միշտ, նաեւ ան ատեն՝ երբ մարդս ֆիզիգապէս կամ նիւթապէս ազատ չէ։

247. Հոգւոյն միշտ ներքուստ ազատ ըլլալուն ինչ վկայութիւն կայ։

Նախ՝ Գիտակցութեան վկայութիւնը։ Ամէն մարդ որոշում մը ընելէն ետքը կը զգայ թէ նոյնը կրնար չընել։ Երկրորդ՝ Բանին վկայութիւնը։ Մարդ իր բարի կամ չար, օգտակար կամ վնասակար որոշումներուն արդիւնքն ու յանցանքն իրեն կ՚ընծայէ. ասկէ բանը կը հետեւցնէ թէ ուրեմն հոգին անձնիշխան է, ապա թէ ոչ չէր կրնար այն զգացումն ունենալ։ Երրորդ՝ Մարդոց վկայութիւնը։ Մարդիկ գրեթէ առ հասարակ օրէնք, պատիժ, վարձք, խրատ, համոզում գործածելով կը ցուցնեն

թէ բարոյական գործոց վրայ անտարբեր չեն, կը ճանչնան մարդուս անձնիշխանութիւնը կամ բարոյական ազատութիւնը յորում կը կայանայ արդարութեան եւ անիրաւութեան, յանցանաց եւ առաքինութեան գաղափարները։

248. Անձնիշխանութեան դէմ ինչ առարկութիւններ կ'ըլլան։

Նախ՝ շարժառիթներու զօրութենէն կ'առարկուի թէ մարդս անձնիշխան չէ։ Մարդս, կ'ըսեն, առանց շարժառիթի չի գործեր. անոնք են որ մարդ բան մը ընելու կ'որոշեն. ապա մարդ անձնիշխան չէ։

Երկրորդ՝ կ'առարկուի Աստուծոյ կանխագիտութենէն։ Աստուած, կ'ըսեն, կանխաւ գիտէ ամեն բան, ապա մարդուս գործերն ալ. եւ որովհետեւ Աստուծոյ կանխաւ գիտցածը հարկաւ կը կատարուի, ապա մարդ ան պիտի ընէ ինչ որ Աստուած կանխաւ տեսած է, ուրեմն մարդ ազատ չէ։

249. Աս առարկութեանց ինչ պատասխան կը տրուի։

Առաջնոյն պատասխան կը տրուի թէ Մարդիկ արդարեւ առիթներէ շարժեալ կը գործեն, բայց առաջուց խորհելով կ'ընտրեն եւ կ'որոշեն ինչ որ պիտի ընեն կամ չընեն. ապա ազատ են։

Երկրորդին ալ աս պատասխանը կը տրուի. Աստուած կանխաւ գիտէ թէ մարդ իր ազատ որոշմամբն ինչ պիտի ընէ. եւ Աստուծոյ այս կանխաւ գիտցածն արդարեւ անվրէպ կը պատահի քանզի անոր կանխագիտութիւնն անսխալ է, բայց ասով մարդ բռնի կամ 'ի հարկէ գործած չըլլար։

250. Հոգւոյ անմահութեան փաստը որն է։

Հոգւոյ անմահութեան փաստն է նախ՝ անոր աննիւթականութիւնը։ Ոգին աննէ-ն եւ մի ըլլալով (243), այսինքն մասերէ բաղկացեալ չըլլալով չի կրնար լուծուիլ կամ մեռնիլ, ապա անմահ է։ Երկրորդ՝ հոգին բնածին բաղձանք մը ունի երջանիկ ըլլալու, աս բնական զգացումն Աստուծմէ ըլլալով չի կրնար սուտ ըլլալ, քանզի Աստուած անխաբ է· եւ որովհետեւ մարդս այս կենաց մէջ իր այն բաղձանացը չի կրնար հասնիլ, քանզի կը մեռնի, ուրեմն կը մնայ անոր ուրիշ կեանք մը ուր այն բաղձանքն իրական պիտի ըլլայ· ապա հոգին անմահ է։ Երրորդ՝ Աստուած անսահման արդար է· արդ որովհետեւ այս կենաց մէջ մարդոց ամէն գործերուն արդար հատուցում չի տրուիր, պէտք է որ մահուընէ անդին կեանք մը ըլլայ, ուր արդարութիւնն իրօք կատարուի· ապա հոգին անմահ է։

251· Աստուծոյ գոյութենէն եւ հոգւոյ անմահութենէն ինչ կը հետեւի։

Կը հետեւի բարոյական օրինաց երրորդ վաւերացումը (215)· այսինքն՝ Աստուծոյ գոհութիւնն ու տժգոհութիւնը։ Աստուծոյ գոհութիւնը՝ եթէ մարդ բարոյական օրէնքները պահէ· տժգոհութիւնը՝ եթէ զանոնք զանց ընէ։ Եւ ասկէ կախում ունի մարդուս վերջին վախճանը որ է երանութիւն մը որուն բաղձանքը այնպէս բնական է մարդուս։

252· Աստուծոյ գոհութեանը կամ տժգոհութեան գաղափարը մարդս ինչ բանի կը ստիպէ։

Բնական կրօնքի։

253· Կրօնքն ինչ է։

Պաշտօն, այսինքն՝ կերպ մը ծառայութիւն առ Աստուած, եւ է կրկին՝ Ներքին եւ Արտաքին։ Ներքին պաշտօնն է՝ Հաւատք, Սէր, Հնազանդութիւն եւ Երկրպագութիւն առ Աստուած 'ի ներքս 'ի հոգւոջ։ Արտաքին պաշտօնը կը կայանայ այն արտաքին ձեւերուն մէջ որովք մարդ իր ներքին պաշտօնը կ'իմացնէ նաեւ արտաքուստ. զոր օրինակ՝ աղօթիւք, երկրպագութեամբ եւ այլովք։ Արտաքին պաշտօնն ալ կրկին է՝ Առանձնական եւ Հրապարակական։

## ՓԻԼԻՍՈՓԱՅԱԿԱՆ ԲԱՌԵՐ

Անբաւութիւն . Immensité.
Ամփոփ. Precis.
Անխարդախութիւն . Intégrité.
Անկատար թուարկութիւն. Dénombrement imparfait;
Անհատական . Individuel.
Անմիջական . Immédiat.
Անյօդաւոր . Inarticulé.
Անտեղութենէ ապացուցանել. Réduction à l'absurde.
Ապարդիւնաւոր . Déméritoire.
Ապարդիւնք . Démérite.
Ապացոյց . Preuve.
Ապացուցական . Démonstratif.
Ապացուցութիւն . Démonstration.
Արդիւնաւոր . Méritoire.
Արդիւնք . Effet. 2. Mérite.
Արտաքին ըմբռնում. Perception extérieure.
Արուեստական . Artificiel.
Աւագ եզր . Grand terme.
Բաժանաբար . Sens distributif.
Բաժանեալ մտքէ բաղադրեալ մտքի, եւ բաղադրեալէն բաժանելոյ հետեւութիւն. Erreur du composé et du divisé. կամ Passer du sens divisé au sens composé et réciproquement.
Բաղադրական . Synthétique.
Բաղադրութիւն . Composition, synthèse.
Բան . Raison.
Բարբառ . Parole.

Բարոյական. ած. Moral. գոյ. La morale.
Բացայայտութիւն. Evidence.
Բնազանցական. Métaphysique.
Բնական. Physique. 2. Naturel.
Բնական ազդում. Instinct.
Բնական աստուածաբանութիւն. Théodicée.
Գաղափարաց զուգորդութիւն. Association des idées.
Գիտակցութիւն. Conscience (Psychologique).
Գործունէութիւն. Activité.
Գումարութիւն. Compréhension.
Դաս. Classe.
Դասաւորել. Classifier.
Դէմյանդիման. Intuitif.
Դիպուածոյ. Contingent.
Դիտողութիւն. Observation.
Դրութիւն. Système.
Եզառած. Enthimème.
Եզրակացութիւն. Conslusion.
Եկամուտ. Adventice.
Ենթադրական. Hypothétique.
Ենթադրութիւն. Supposition, hypothèse.
Երկդիմութիւն. Ambiguïté.
Երեւոյթ. Phénomène.
Երկառած. } Dilemme.
Երկսայրաբանութիւն. }
Զգայնութիւն. Sensibilité.
Զգացողութիւն. Sensation.
Զգացում. Sentiment.
Էական յատկութիւն. Qualité essentielle, caractère.

Ըմբռնում. Perception.
Ընդունակութիւն. Capacité.
Ընծայական. Déductif.
Ընծայութիւն. Déduction.
Իմաստակութիւն. Sophisme.
Իմաստասիրութիւն. Raisonnement.
Իմացողութիւն. Intelligence.
Ինքնաշարժ. Spontané.
Լեզու. Langage.
Լուծումն. Analyse.
Խելամտութիւն. տես Մակածութիւն։
Խորհրդածութիւն. Réflexion.
Խօսք. Phrase.
Ծանօթութիւն. Notion.
Կարողութիւն. Faculté.
Կեղծ. Factice.
Կրկնումն սկզբան. Pétition de principe.
Կրտսեր եզր. Petit terme.
Համաբարդութիւն. Sorite.
Հանգիտութիւն. Analogie.
Հանրացում. Généralisation.
Հաւաքաբանութիւն. Syllogisme.
Հաւաքաբար. Sens collectif.
Հետազօտութիւն. Investigation.
Հետեւական. Conclusif.
Հետեւութիւն. Conséquence.
Հնարք. տես Եղանակ։
Հոգեբանութիւն. Psychologie.
Ձայնաւոր. Phonétique.
Ձեռնարկութիւն. Argumentation.

Ձեռնհասութիւն. Compétence.
Ձեւաւոր. Figuré.
Ճիշդ. Exact.
Ճշդութիւն. Justesse.
Ճշմարտախօսութիւն. Véracite.
Մակաբերութիւն. տես Ընծայութիւն։
Մակածութիւն. Induction.
Մարդոց վկայութիւն. Témoignage des hommes.
Մեծ եզր. տես Աւագ եզր։
Միջին եզր. Moyen terme.
Միջոց. Espace. 2. Moyen.
Մտադրութիւն. Attention.
Յարաբերականէ բացարձակ հետեւութիւն. Erreur du relatif, կամ Passer de ce qui est vrai à quelques égards à ce qui est vrai simplement.
Յարաբերութիւն. Rapport.
Յարացոյց. Exemple.
Յիշատակարան. Monument.
Յղացում. Conception.
Յոռի շրջան. Cercle vicieux.
Յօդաւոր. Articulé.
Նախադրեալ. Prémisse.
Ներընդունական. տես Դիպուածոյ։
Ներքին զգայութիւն. Sens intime.
Նշանակ. Symbole.
Նոյնութիւն. Identite.
Ոգի. Esprit.
Ունակութիւն. Habitude.
Ուսողութիւն. } Mathématiques.
Չափագիտութիւն. }